1916 № 48.—Նոյեմբերի 27

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.: Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ գիւղացիների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.: Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասարքաեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից:

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԱՆՈՐԱԿԵԼԻ ՎԱՐՄՈՒՆՔ

Այս վերնագրով «Համբաւաբեր»-ի անցեալ համարում մենք հաղորդեցինք փոխ-ոստիկանապետ Սուսլովի վարմունքը Բաթումի քաղաքային խրատուն հայ Մնդոյեանի հետ. որով նա վերջինիս ապտակում է, երբ սա խնդրում է տունը զինուորական գրաւման ենթարկելիս՝ փոխանակ վաւերագրերը դուրս դէսուդէն շպրտելու, ինքը հաւաքէ. սակայն Սուսլովը ապտակում է Մնդոյեանին աւելացնելով՝ „Вы армяне всѣ подлецы и мошенники", այսինքն Դուք հայերդ բոլորդ խաբեբայ էք և սրիկայ:

Մենք խիստ դժուարանում ենք որակելու Սուսլովի այս վարմունքը: Մի փոխ-ոստիկանապետ, որ կրթուած մարդ պիտի լինի և ոչ ռամիկ, բայց ցոյց է տալիս փողոցային վարմունք: Եւ դժբախտութիւնն այն է, որ պատկանում է ինքը զինուորական դասակարգին, մի դասակարգ՝ որին յատուկ է միշտ վայելուչ և ասպետական վերաբերմունք. մինչդեռ Սուսլովը իւր այդ վարմունքով արատաւորում է ոչ միայն իրան, այլև դժբախտաբար և այն համազգեստը, որ նա կրում է:

Սուսլովի այս գռեհիկ և անարգ վերաբերմունքը մի պարտաճանաչ քաղաքային խրատուի հետ, որ նոյնիսկ Կայսեր շնորհակալութեանն է արժանացած, բնականաբար վրդովել է ոչ միայն Բաթումի հայ և այլ վայրերի հասարակութեան, այլև մեր հարևան վրացիներին: Բաթումի քաղաքագլուխ Կրինիցկին արդէն դիմել է բողոքով Միքայէլեան բերդի բերդապետին, որին միահամուռ նեցուկ են հանդիսացել Բաթումի ինքնավարութեան վրացի անդամները. իսկ նոյն քաղաքի բորսայի յանձնաժողովի նախագահ իշխան Նակաշիձէն իւր ընկերակիցներով արտակարգ նիստ գումարելով յայտնել են իրենց արդար զայրոյթը տեղի ունեցած անորակելի վարմունքի մասին, որոշելով այս դէպքը հասցնել մինչև Պետական Դումա: Թիֆլիսում էլ քաղաքային խորհուրդն խրատուի Ռամիշուիլու առաջարկութեամբ, որին միացան խորհրդի բոլոր վրացի անդամները, իւր ցաւը յայտնեց թէ Մնդոյեանին, դէպքի անմիջական զոհին և թէ հայ ժողովրդին, որին յանիրաւի այդքան ծանր վիրաւորանք են հասցրել:

Մենք անչափ ուրախ ենք և միխիթարուած մեր հարևան ժողովրդի այս բարեկամական ցոյցերով: Եւ եթէ ոչ Մնդոյեանը, գէթ հայ ժողովուրդը զուցէ և գոհանար միայն այդ համակրական արտայայտմամբ, եթէ խնդիրը

մի սասկ դէպքի մասին լինէր. սակայն վրդովեցուցիչը այն է, որ Սուլթանները արտայայտիչ են միայն այն չարամիտ տրամադրութեան, որ մի ժամանակից ի վեր սկսել է ծագել և վարակել ու ճարակել որոշ շրջաններ և մինչև իսկ սպառնում է հոսանք դառնալ, որ պիտի վարակէ աւերիչ ընթացքով իւր շրջապատը։

Եւ զազրելին այն է ահա, թէ ինչպէս մի մանաւոր դէպք առիթ է դառնում մի բարձրաստիճան զինուորականի չպատել ամբողջ հայ ժողովրդի հասցէին մի այսպիսի անտեղի վիրաւորանք։ Եւ եթէ օտարներին վրդովում է այս դէպքը, հապա որքան աւելի պիտի այդ դէպքը յուզէ հայ ժողովրդին, այն ժողովրդին, որի կէսը, ահա երրորդ տարին է, իւր զաւակների թափած արիւնով անընդհատ ներկում է պատերազմի դաշտերն ընդհանուր հայրենիքի պաշտպանութեան համար, իսկ միւս կէսը՝ իւր առ ուս ժողովուրդը տածած համակրութեան պատճառով՝ աւերուել, քարուքանդ է եղել, որի երկիրն աւերակ է դարձել, քար քարի վրայ չէ մնացել և ամբողջովին ողջակէզ է լինում, այն աստիճանի, որ իւր գոյութիւնն իսկ իբրև ազգ վտանգի ենթարկւում։

Այս ժողովրդի զաւակներս ահա՝ խոր խոցուած այսպիսի տմարդի վերաբերմունքից և անարգ խօսքերից՝ չենք կարող լռել և բուռն կերպով չբողոքել, մեր նողկանքը չյայտնել այս Սուլթանեան վարմունքի առթիւ։

Մինչև ե՞րբ։

Սկայ

---

## ԲԱԳՈՒԻ ՀԱՅ ԲԺԻՇԿՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ

1915 թ. աշնանը գաղթականական հոսանքի ալիքները Բագու էլ հասան։ Տեղի հայ բժիշկները տեսնելով փախստական եղբայրների «վտիտ և հիւանդ, անօթի ու չուար մանուկներին, ավալլուկ և մերկ հասակաւոր գաղթականներին», նոյն թուականի աշնանը կազմակերպեցին հայ բժիշկների մի ընկերութիւն՝ կեանքից հալածուածներին օգնութիւն ցոյց տալու համար։

Այս ընկերութիւնը մինչև 1916 թ. յուլիս ամիսը իբրև բոլորովին անկախ մի կազմակերպութիւն զգալի օգնութիւն ցոյց տուեց տեղի գաղթականութեան, սակայն այդ նոյն ամսին բժըշկական ընկերութիւնը իր ամբողջ կազմով մտաւ Բագուի Հայոց Կուլտուրական ընկերութեան մէջ իբրև անկախ գործող բժկական բաժանմունք (սեկցիա)։

Ժամանակի ընթացքում ընկերութեան անդամները այն եզրակացութեանն են գալիս, որ հայ ժողովուրդն առհասարակ բըժշկական-առողջապահական օգնութեան մեծ կարիք ունի, որ այդ ուղղութեամբ շատ քիչ բան է արուած թէ արևմտահայ և թէ արևելահայութեան համար և ահա ընկերութիւնը որոշում է ընդարձակել իր գործունէութեան ասպարէզը. ուզում է դառնալ «մի միայն հասարակական օրգան հասարակական լայն ֆունկցիաներով»։

Ինչպէ՞ս է հասկանում այս նորակազմ ընկերութիւնը հասարակական լայն գործառնութիւն (ֆունկցիա) գաղափարը. պէտք է այդ ընկերութեան միջոցով հրատարակուի մի պարբերական առողջապահական օրգան «Առողջ Կեանք» անունով, պէտք է կազմակերպուին դասախօսութիւններ, բժշկական-բնագիտական համագումարներ, շրջիկ բժշկական խմբեր և այլն։ Ընկերութիւնը իր գործունէութեան ծրագիրը բաւական լայն է ընդգծել, բնական է, որ աստիճանաբար կիրականացնի իր ծրագրի բոլոր կէտերը։ Այս եկող յունուարից սկսելու է հրատարակել «Առողջ Կեանք» ամսագիրը, որի խմբագրութիւնը կազմուած է։

Այս բոլորը կատարւում է Բագւում։ Շատ ժամանակ չի անցել այն օրերից, երբ Բագուի մէջ հոգևոր կուլտուրական ձեռնարկութիւններն այնպէս էին չորանում, ինչպէս բոյսը անապատում։ Բագուն նիւթական կուլտուրայի օրօրանն էր. փողի և հարստանալու հարցը ամբողջութեան մտահոգութեան առարկան էր կազմում. կարծես այդ քաղաքը հոգեկան բարձր կարիքներ չունէր բնաւ։

Վերջերս զգալի կերպարանափոխութեան է ենթարկուել Բագուի գոնէ հայկական կեանքը. այնպիսի երևոյթներ են հանդէս գալիս, որոնց մասին մի 6 տարի առաջ համարեա անկարելի էր մտածել։ Բագւում է հրատարակւում ամենօրեայ «Արև», «Թատրոն և Երաժշտութիւն» ամսագիրը. մօտ ժամանակներս Բագւում են հրատարակուելու «Գործ» և «Առողջ Կեանք» ամսագրերը։ Այնտեղ զարգանում են հայկական դպրոցները, այնտեղ է ծրագրւում «Հայկական մանկապարտէզը», այնտեղ է կազմակերպւում հայկական, եթէ չեմ սխալւում, առաջին բժշկական ընկերութիւնը, այնտեղ է կենտրոնանում մեր հոգևոր կուլտուրայի համար աշխատող մշակների մի զգալի մասը։ Մի խօսքով, Բագուն սկսում է մեր կուլտուրական կեանքի երկրորդ կենտրոնը դառնալ։

Հայ բժշկական ընկերութիւնը գալիս է զարկ տալու Բագուի կուլտուրական այդ շարժմանը։ Այս անչափ ուրախալի մի երևոյթ է։

Մեր մամուլի մէջ շատ է գրուել և խօսուել հայ բժիշկների նոր սերնդի մեր կեանքից օտարանալու, նրանց հասարակական բնազդներից զուրկ լինելու մասին։ Բագուի բժիշկները ուզում են ցոյց տալ, որ սխալ է այդ կարծիքը, աւելի ճիշտ՝ 1915 թուի աշնանից սկսած նրանք ցոյց են տուել այդ։

Սակայն մի ուրախալի երևոյթ առանձնապէս պէտք է շեշտել այս նոր շարժման մէջ. որքան մեզ յայտնի է, այդ ընկերութեան մէջ կան զանազան հոսանքների մարդիկ, սակայն այդ չի խանգարել բոլորին միասին մի այնպիսի կոչ հրատարակելու, որի մէջ մի քանի տեղ առանձին ուժգնութեամբ շեշտած է հայ ժողովրդին ծառայելու ցանկութեան անդրդուելի լինելը։ Կոչի մէջ ասուած է. «խորհող բժիշկը գալիս է այն եզրակացութեան, որ հայ ժողովրդի ֆիզիքական գոյութեան պահպանումը պրոբլեմների պրոբլեմն է մեր կեանքի»։ Ահա ձեզ և թարմացնող, կազդուրող խօսք։ Այսպիսի պարզութեամբ, վճռականութեամբ և ոգևորութեամբ հաւաքական խօսքեր քիչ են ասել մեր հայ բժիշկները խմբովին։ Թող այս խօսքերը իրողութիւններ դառնան և համակեն իրենց տաք շնչով մեր բոլոր տեղերի բաւականին ստուարացող բժշկական խմբերին։

Բագուի բժիշկների վերև բերուած խօսքերը հետաքրքրական են ոչ միայն այն տեսակէտից, որ այնտեղ հայ ժողովրդին ծառայելու որոշումն է ազդարարւում, այլև ըստ էութեան, ըստ իմաստի եւ մի շատ մեծ և կարևոր գաղափար է շեշտւում. հայ ժողովրդի ֆիզիքական գոյութեան հարցը բժիշկները համարում են մեր ազգային կեանքի հարցերից մեծագոյնը, կարևորագոյնը։ Ճիշտ որ, ամեն մի ազգի համար այդ մեծ խնդիր է. բոլոր կուլտուրական ժողովրդների մտահոգութեան ամենակարևոր հարցն է՝ պահպանել ժողովրդի բնական քանակը գոնէ նոյնութեամբ, եթէ անկարելի է մեծացնել, որի համար անասելի ջանքեր չեն խնայւում։

Մեզ, հայերիս համար, այս պատերազմին անասելի, անչափ զոհեր տալուց յետոյ, մի առանձին կարևորութիւն են ստանում այս խօսքերը. մեր ճիգերը պէտք է լարենք այդ ուղղութեամբ, առ ժամանակ գոնէ մեր մտահոգութեան կենտրոնը դարձնենք

*ազգի ֆիզիքական գոյութեան խնդիրը։ Բժշկական ընկերութիւնը իր մատը դրել է ճիշտ վէրքի վրայ։*

*Այդ գաղափարին մարմնացում տալիս՝ «Առողջ Կեանքի» խմբագրութիւնը թող հայ ժողովրդի համար պարզի նաև այն բանը, որ առողջ, ճկուն, գեղեցիկ, յունական ըմբռնմամբ մարմինը կեանքի վեհագոյն արժէքներից մէկն է. թող նա հայ ընթերցողի գիտակցութեան մէջ այն փոփոխութիւնը յառաջացնի, թէ խելօքութեանը, մտքի ուժին, հոգու նուրբ կազմին և կարողութիւններին առողջ ու գեղեցիկ մարմինը տալիս է մի առանձին փայլ, մի առանձին շուք. թող նա մեզ սովորեցնի մարմինները նայելու հելլէնների աչքով։*

*Գ. Էդիլեան*

# Համաշխարհային պատերազմը

*Ռուսաց Արևմտեան ճակատ.—Այս շաբաթուայ ընթացքում մի քանի աննշան յարձակումներ և հակայարձակումներ են տեղի ունեցել։ Ռուս բանակի առաջամասերը աջող հետախուզութիւններ են կատարում։ Անտառապատ Կարպատներում ռուսները գրաւել են մի բարձրունք, բայց թշնամու կատաղի հրացանաձգութեան պատճառով ստիպուել են հեռանալ այդ դիրքից։*

*Կովկասեան ճակատ.—Այս ճակատի ամենակարևոր դէպքը թիւրքերի և քիւրդերի առաջանալն եղաւ Վանի ուղղութեամբ, որի պատճառով Հայոց Ձորի գիւղերն այրուեցին և բնակչութեան մօտ 15,000 մարդ նահանջեց դէպի Թիմարի շրջանը։ Թիւրքերը հասել են մինչև Վան, բայց ձեռք առնուած միջոցների պատճառով նրանք յետ են մղուել Ոստանի ուղղութեամբ։*

*Ռումանական ճակատ.—Տրանսիլվանիայում կռիւները շարունակւում են Տրոտուլի, Ուլտայի և մօտակայ գետահովիտներում. Վալախիայում թշնամու գրոհներն աջողութիւն են ունեցել Տիտու-Բուխարեստ երկաթուղու շրջանում, ուր ճակատի ճեղքուելուն պատճառով ռումանները նահանջում են։ Միւս ճակատամասերում հակառակորդի գրոհները յետ են մղուել*

*Բալկանեան ճակատ.—Սերբ զօրքերը բուլգարական մի քանի դիրքեր են գրաւել Գրունիշտի—Բուդիմիրցի շրջանում, վերցնելով գերիներ և աւար։ Թշնամին փախչում է դէպի հիւսիս։ Սերբ-ֆրանսական զօրքերը Պարալովից հիւսիս աջողութիւն են ունեցել։*

—

*Յունաստանում պարզւում է, որ զօրքի ափ ելնելիս յոյները սպանել են բազմաթիւ դաշնակից զինուորներ։ Սաստիկ հալածանք կայ Վենիզելոսականների դէմ. Նախարարները խորհուրդ են տուել անգլիացիներին հեռանալ Աթէնքից Պիրէեւ։ Դաշնակիցները բաւարարութիւն և երաշխիքներ են պահանջելու, որ նման վայրագութիւն չկրկնուի։ Աթէնքում հսկում է յոյն զօրքը։*

—

*Անգլիայում Ասկվիտը տուել է իւր հրաժարականը, որ ընդունուել է թագաւորի կողմից։ Հրաժարական են տուել և միւս մինիստրները։ Թագաւորն իր մօտ է հրաւիրել Բոնար-Լօուին։*

# Պ ե տ ա կ ա ն  կ ե ա ն ք

## ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱ

*Մի անգամ էլ ռուս հասարակութիւնը յուսախաբուեց։ Տասնօրեայ ընդմիջումից յետոյ Պ. Դուման բացուեց առանց որևէ նոր խօսք ասելու։ Ոչ կառավարութեան ներկայացուցիչը, նախարարների կաբինետի—դահլիճի նախագահը մի գործնական քայլ արեց իր դեկլարացիայով—«յայտարարութեամբ», ոչ էլ Դուման հարկաւոր կերպով արձագանգեց։ Առանց դահլիճի (կաբինետի) մէջ սպասած փոփոխութիւնը մտցնելու աւագ նախարարը եկաւ Դումա հին երգը երգելու, անորոշ, տարտամ մի ճառով։ Շտիւրմերի հին դահլիճն ու «կուրսը»—կառավարութեան ընթացքն է Դումա գալիս նոր անունով վերամկրտուած, մի շատ հին, ծանօթ ծրագրով։*

*...«Իմ այսօրուայ յայտարարութեան մէջ մի փնտրէք առաջիկայ տարիների ընթացքում կառավարութեան գործունէութեան ամբողջական ծրագիրը։ Մեր ապրած ներկայ բոպէում կառավարութեան ծրագիրը կարող է լինել միայն մի բան—յաղթանակը, ինչ էլ որ արժենայ, լիակատար, վճռական յաղթանակը»։ Պարզ և որոշ։ Կառավարութեան ներկայացուցիչը տասնօրեայ փորձից և իր ու հասարակական ուժերը լաւ չափելուց ու կշռելուց յետոյ՝ խօսում է առանց քաշուելու։ Դումայի մեծամասնութեան պահանջի—ն ա խ ա ր ո ւ թ ե ա ն  պ ա տ ա ս խ ա ն ա տ ո ւ ո ւ թ ե ա ն մասին և ոչ մի խօսք։ Կառավարութիւնը Դումայի հետ կը գնայ այնքան, որքան որ վերջինս կառավարութեան հետ կը լինի, որքան որ կը գնայ կառավարութեան ընդգծած հին ուղիով։ Դուման դեռ ևս մի հասարակական ուժ չէ, որին կարելի չլինէր արհամարհել։ Հակառակ պատմութեան ծանր դասերին՝ իր ներկայ կազմով նա հասարակական ազդեցիկ գործօն չէ, «պարլամենտարական» դեր կատարել—ամբողջ ժողովրդի կամքի արտայայտիչը հանդիսանալ ու կառավարութեան վրայ ազդել չէ կարող։*

*Ահա ինչ սովորեց այս տասնօրեայ պապանձումից յետոյ կառավարութեան ներկայացուցիչը և ինչ ասաց «ժողովրդի ներկայացուցիչների» ժողովին։*

*Այս փորձառութեամբ է, որ ձախակողմեան պատգամաւորները սկզբից և եթ փորձեցին խափանել Տրեպովի ծրագրային ճառը։ Բայց նրանք—Չխէիձէ, Սկոբելև, Կերենսկի, Խաուստով, Չխենկելի, Ջիւրէնսկի, Կէյնիս և Սուխանով—զրկուեցին 8-նիստից, առ ժամանակ լռութեան դատապարտուեցին նոյն մեծամասնութեան լուռ համաձայնութեամբ, որ երէկ գեղեցիկ խօսքերով ու շարժումներով ասպետական մարզանքներ էր կատարում Տաւրիկեան պալատում։*

*Ապա խօսեց հռչակաւոր Պուրիշկէվիչը, թերևս միակ անկեղծ հայրենասէրը արքայականների բանակում։ Նա շեշտում է ամենից առաջ այն ողբերգական հակասութիւնը, որ կայ ճակատի և թիկունքի միջև։ Կարծես կառավարութիւնը երկու տեսակ գործունէութիւն ունի. մէկը ճակատի, իսկ միւսը թիկունքի համար։ Մէկը միւսին ոչ թէ լրացնում, այլ հակասում, բացասում է։ Պէտք է ժողովրդին ասել ամբողջ ճշմարտութիւնը, պարզել այդ ճակատագրական հակասութիւնը։ «Ուստի անհրաժեշտ է, որ այստեղից հնչող խօսքերը հասնին ժողովրդին, թափանցեն ժողովրդական միջավայրը։ Այս ամբիոնից խօսքի ազատութեան հասցէին ամեն մի ոտնձգութիւն ոճիր է»,—ասում է խօսքի ազատութեան և սահմանադրութեան երբեմնի երդուեալ թշնամին։ Եւ այս ճշմարտութիւնն ասելու համար նա հեռացել է աջակողմեաններից, մնալով հանդերձ «աջերից աջը», որպէսզի ցոյց տայ, որ պահպանողականն էլ կարող է հայրենասէր լինել, որ պահպանողականութիւնն ու դաւաճանութիւնը հոմանիշ գաղափարներ չեն։*

«Րոպէներ են լինում ժողովուրդների կեանքում, ասում է Գուրիշկևիչը, երբ ոչ միայն ճշմարտութիւնը պիտի ասել այս ամբիոնից, այլ անհրաժեշտ է բարձրանալ Իւան Մեծի զանգակատունը և զանգահարել այնտեղից, ուսկից երևում է այն ամենը, ինչ կատարւում է Ռուսաստանում... Կառավարութեան անդամների խօսքերի և գործունէութեան միջև լիակատար հակասութիւն է տիրում»։ Ապա Գուրիշկևիչը շեշտում է, որ մինչ ամբողջ երկիրը յաղթութիւն է ցանկանում, մասնաւոր հաշտութեան լուրերը ցոյց են տալիս, «որ մեզանում կայ ինչ-որ մէկը, որ ցանկանում է այդ հաշտութիւնը, որին և ամբողջ ուժով ձգտում է» և այսու «կասկածի տակ ձգում կառավարութեան հեղինակութիւնն ու հայրենասիրութիւնը։ Աջակողմեանները ուզում են աշխատել կառավարութեան հետ, բայց ո՞ւր է այդ կառավարութեան գործունէութիւնը»։ Ի՞նչ արաւ կառավարութիւնը «թիկունքի թալանչիների ու դաւաճանների» վնասակար գործունէութեան առաջն առնելու համար, աւելացնում է նա։ «Ֆրանսիայում միլիոնատէր Պուտինը, որ պատերազմի սկզբին սկսել էր գները բարձրացնել՝ Ժոֆրի պահանջով մահապատիժ կրեց, իսկ մեզանում ներքին գործերի մինիստրը թալանչիներին պաշտպանելու համար փորձեց թերթ հրատարակել տալ։ Ամբողջ թիկունքը լի է անպիտան մարդկանցով, որոնց տեղը տաժանակիր աշխատանոցն (կատորգան) է»։

Եւ Տրեպովը Դումա եկաւ նոյն դահլիճով՝ կաբինետով և այդ նոյն ներքին գործոց նախարարի հետ. «Կաբինետի վերակազման անյաջողութիւնը մի կէտում առանձնապէս ցայտուն կերպով արտայայտուեց. այդ նրա կազմի մէջ (ներքին գործոց նախարար) Պրոտոպոպովի պահելն է մինչև այսօր», գրում է Русск. Вѣд. Դումայի վերաբացման նախօրէին։ «Դումայի առաջ նոր դահլիճ (կաբինէտ) չէ դուրս գալիս, այլ միևնոյն Շտիւրմերինը։ Ճշմարիտ է, Շտիւրմերը այնտեղ չէ, բայց այդ գործի էութիւնը չի փոխում», շարունակում է թերթը։

Այսպէս՝ նախարարական դահլիճի նոր նախագահը բացի մի քանի երկաթուղու գծերի շինութեան, պարենաւորման գործի հնարաւոր բարելաւման, համալսարանների դրութեան ցանկալի բարեփոխման մասին անորոշ և ոչինչ չպարտաւորեցնող երկրորդական «խոստումներից» նոր բան չասաց իր ճառի մէջ։ Միակ քիչ թէ շատ ուշագրաւ յայտարարութիւնը արտաքին քաղաքականութեան է վերաբերում. այն, որ դաշնակիցները Կ. Պոլիսն ու Վոսփորը Ռուսաստանին են խոստացել հաստատապէս, եթէ... իրենք յաղթող լինեն։ Այդ էլ արին մի, այսպէս ասած, «իրողութիւնները կանխող» իրողութիւն (փաստ) է, թէական ու հարցական։

Վ. Խ.

# Ներքին տեսութիւն

## ԱԶԳԱՅԻՆ ԿՐԹՈՒԹԻՒՆԸ ԳՈՐՈՒԱՅ ԳԱՒԱՌՈՒՄ

Գորուայ գաւառում, Գորի քաղաքով, հայերի թիւը հասնում է մօտ 20,000-ի, որ ցրուած է մինչև Կովկասեան լեռների ստորոտներին փռուած օսական տները, սակայն գլխաւորապէս բնակութիւն հաստատած են Գորի, Սուրամ, Ցխինվալ, Ախալքալաք (Գորուայ), Բորժոմ, Կարալէթ, Ախալգորի, Վաղա, Տղվիաւ, Խեթուբան, Կաւթիսխև, Դոյէս, Ղարախաչ, Ալի, Ատոցի, Կասպ, Ուփլիսցիխէ և այլն մեծ ու փոքր գիւղերում, իրենց դարաւոր հարևան վրացիների և հրէաների հետ։

Քաղաքներում և աւաններում հայերը պարապում են գլխաւորապէս առևտրով ու արհեստներով, մինչդեռ գիւղերում՝ երկրագործութեամբ և խաշնարածութեամբ։

Շրջանիս գիւղերում ապրող հայը շատ հաշտ և համերաշխ է իր հարևանների հետ. նրա կողքին օրնիրուն, գութանի մաճը ձեռին, պատռում է արգաւանդ ու ջրարբի հողը, վաթում է արիւն-քրտինք, օրուայ պարէնը հայթայթելու նպատակով, սակայն, չնայելով այդքան դաժանակիր աշխատանքների, միշտ էլ սոված է, քաղցած, մերկ ու ձորձերի մէջ պարուրուած։

Իսկ քաղաքներում ու աւաններում ապրողները, որոնք պարապում են վաճառականութեամբ ու արհեստներով, բաւանաչափ ապահով վիճակ ունեն, սակայն ի՞նչ փոյթ, դրանից ազգն ամենևին շահ չունի, ուրեմն հանգուցեալ Գամառ-Քաթիպայինը չը լինի «..... եմ դրանց փողի ալ վրան»։ Ընտանիքում աշխատում են կոտրատած ռուսերէնով բլբլդացնել, երեխաներին այլասերում, կեղծ ձևեր իւրացնել տալիս. հին, վրացնակ չիխտի, կոպի են կապում ու շանտեկլէր, կամ տանգօ դէյրաներ հագնում. մի խօսքով, կապկի նման ընդօրինակում են այն ամենը, ինչ որ իրենց սազական ու վայել չէ։

Ահա այսպիսի կորած ու մգլած, փոքրաւոր—վաճառական—տղրուկներից ի՞նչ կարող է շահուել կամ դպրոցը, կամ եկեղեցին, կամ հասարակական որևէ կուլտուրական հաստատութիւնը. հենց այդ պատճառով է, որ տեղական միջոցներով ոչինչ չի կարելի անել և ճարահատեալ Վրաստանում բնակութիւն հաստատած հայ աշխատաւոր մասսան միշտ ձեռքը պարզած օտարների դռներն է բաղխում և օգնութիւն հայցում։

Այս պարագայում շուտափոյթ օգնութիւնը մեր շրջանի օտարախօս վայրերը ոտի կըկանգնեցնի, այլասերման շաւղից յետ կըկասեցնի և մենք մօտիկ ապագայում կունենանք կանոնաւոր կազմակերպուած, հայկական ոգով կրթուած ու դաստիարակուած սերունդ. իսկ այս ամենն իրականացնելու համար հարկաւոր են կանոնաւոր ծխական ազգային դպրոցներ. դպրոցներ, ո՛չ թէ քանակով շատ, այլ գլխաւորապէս ո ր ա կ ո վ։

Արդ, տեսնենք կուլտուրական ի՞նչ վիճակի մէջ է գտնւում Գորուայ գաւառը։ Ամբողջ գաւառում կայ տ ա ս ը դպրոց, այն է՝ Գորի, Սուրամ, Ցխինվալ, Ախալքալաք, Բորժոմ, Քախուրէլ, Վաղա, Ղզլքիլիսա, Ախալգորի և Կասպի, ուրեմն իւրաքանչիւր մօտ 2,200 հոգուն ընկնում է մի դպրոց, իսկ եթէ ճշմարիտը խօստովանենք, այն դէպքում այս ամբողջ գաւառում կունենանք ընդամենը երկու կանոնաւոր դպրոց, մէկը՝ Գորիում, միւսը՝ Սուրամում, որոնց տուած արդիւնքը երևում է պարզ կերպով, միւսները մի-մի, կամ երկ-երկու դասատուով մի կերպ կառավարուելու ճամբայ են բռնել։

Հետևապէս հարկաւոր է վերջինները դնել ամուր հիմքերի վրայ, աջակցել. իսկ որտեղ դպրոց չկայ, ինչպիսիք են Ղարախաչ, Կարալէթ, Տղվիաւ, Ռուիս, Դիրբ, Ուփլիսցիխէ, Խեթուբան անպայման բանալ նոր դպրոցներ, ունենալ բարեխիղճ և գործին նուիրուած, գաղափարական հսկիչներ և ոչ թէ դպրոցը բանալ ողորմելի 400—500 մանէթ նախահաշուով, ողորմելի դասատուներ նշանակել, որոնք ամբողջ ինն ամիս իրենք էլ են տանջւում, երեխաներին էլ են նահատակում և ժողովուրդը ոչ մի արդիւնք չըտեսնելով ճարահատեալ շուտով յուսահատւում է, երես դարձնում հայկական դպրոցներից ու այդպիսով «ունքը շինելու տեղ, աչքն էլ են հանում»։

Գալով Գորուայ դպրոցին, անտարակոյս այն պէտք է միջնակարգի վերածել, թեմականի ծրագրով, իսկ Սուրամի, Ախալքալաքի և Ցխինվալի դպրոցները դարձնել կենտրոնական երեք դասեան, կամ չորս-դասեան։

Ահա, այն ժամանակ Գորուայ գաւառի հայութիւնը աստիճանաբար կզգաստանայ ու կազատուի անխուսափելի այլասերումից։

Սուրամ

Յովհ. Դաւթեանց

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

*Նոյեմբ. 18-ին Երաժշտական դահլիճում՝ պ. Սուրխաթեան խօսեց Թրքահայ նոր գրական (հեթանոսութիւն) ուղղութեան մասին։*

*Դասախօսը երկար կանգ առաւ ապացուցանելու, որ արեւմտահայ գրականութեան մէջ, գաւառի հայութիւնը իւր ցաւերով և կեանքի բազմազան երեւոյթներով երեւան չէ գալիս, այդ պատճառով արեւմտահայ գրականութիւնը գոյութիւն չունի, այլ կայ միայն Պոլսահայ գրականութիւն։*

*Այս կարծիքը սակայն այնքան հիմնաւոր չէ, որովհետև արեւմտահայ գրականութիւն Խրիմեանից և Սրուանձտեանից սկսեալ մինչև մեր օրերը, Զարդարեան, Թլկատինցի, Չիթունի և այլն ունեցել է գաւառի հայութեան կեանքի արտայայտութիւնը, թէև այդ ուժեղ կերպով չէ տիրապետել, քաղաքական և այլ աննպաստ պայմանների պատճառով, բայց և այնպէս թիւրիմացութիւն է արեւմտահայ գրականութիւնը վերագրել միայն Պոլսահայութեան։*

*Դասախօսն այնուհետև կանգ առաւ արեւմտահայ գրական նոր-հեթանոսական ուղղութեան մասին, որի արտայայտիչներն էին՝ Դանիէլ Վարուժան, Քիւֆէջեան, Զարեան և ուրիշներ, որոնք արտայայտուել են «Ազատամարտի» և Զմիւռնիոյ «Հայ Գրականութեան» մէջ և ապա վերջերս հրատարակել են «Նաւասարդ» գրական-գեղարուեստական ժողովածու և իրենց օրգան «Մեհեան» թերթը։*

*Հեթանոսական այդ ուղղութեան ամենազօրեղ արտայայտիչը եղել է Դանիէլ Վարուժան, իր մի շարք քերթուածներով, որոնց մէջ հին հեթանոսական կեանքն է նկարագրուած իւր մերկութեամբ և գեղեցկութեամբ։*

*Դասախօսը կարդաց բանաստեղծի քերթուածներից մի քանիսը և յատկապէս այն հատուածները, որոնք պատկերացնում են կնոջ մարմինը, իւր գեղեցկութիւններով, և գտաւ, որ նրանց գեղարուեստական ապրումները ծայրայեղութեան են հասել և զգայականութիւնը տիրապետում է ընթերցողին։*

*Մինչդեռ Վարուժանի «Գողգոթայի ծաղիկներ» վերտառութիւն կրող քերթուածներն աւելի գեղեցիկ են և աւելի արժէքաւորում են բանաստեղծի տաղանդը։*

*Ըստ դասախօսի պէտք է այդ ուղղութեան հետեւել, ապրել ժողովրդի ցաւերով, հոգեբանօրէն վերլուծել աշխատաւոր դասի կեանքն ու մտայնութիւնը, նրա կրած զրկանքներն ու տառապանքները։*

*Այնուհետև դասախօսը քննադատութեան ենթարկեց գրական այդ նոր ուղղութիւնը, ցոյց տալով, որ այդ խախուտ հիմքերի վրայ է դրուած, կեղծ է, և ինչ որ կեղծ է և ոչ հոգեբանական, այդ գեղեցիկ արուեստ չի կարող լինել։*

*Դասախօսութիւնից յետոյ եղաւ տաք վիճաբանութիւն։*

X

*վերաբերեալ հարցերի շուրջը. տնտեսական սուղ դրութիւն, քաղցածութիւն, կղզիացած, անկազմակերպ ու գերեզման տանող կեանք, դպրոց, մանկավարժութիւն, օրուայ հարցեր և այլն. և մէջներին եղած մի «գործնականի» առաջարկութեամբ որոշւում է՝ յառաջիկայում գումարել շրջանիս (Ղափանի) ուսուցչութեան մի ընդհանուր ժողով, ուր քննուին առաջադրուած հարցերը՝ մի ելք գտնելու ստեղծուած ծանր դրութիւնից ելնելու համար։*

*Ժողովը նշանակւում է յաջորդ կիրակին. ուղարկւում են բոլոր ուսուցիչներին յատուկ հրաւիրաթերթեր և ցրւում։*

*Գալիս է կիրակին։*

*Առաւօտեան վաղ հաւաքւում են հ ր ա ւ ի ր ո ղ ն ե ր ը և թըղթերն առաջներին, աչքերը ճամբին՝ սպասում հ ր ա ւ ի ր ո ւ ա ծ ն ե ր ի ն. ու սպասում են. ժամը արդէն 9-ն է, 10... 11... 12... 1... 2... 5...ը, մթնում է... ժողովը չի կայանում, հրաւիրուածներից և ոչ մէկը չէ գալիս և չի էլ յայտնում։ Մեր ուսուցչութիւնը, նամանաւանդ գիւղականը, իր այսօրուայ պաշտօնին ու զբաղմունքին նայում է որպէս մի ժ ա մ ա ն ա կ ա ւ ո ր, այս ու այն հանգամանքի շնորհիւ իր շլինքին փաթաթուած ու գլխին փ ո ր ձ ա ն ք դարձած մի արուեստի, օ ր ո ւ ա յ զ բ ա ղ մ ո ւ ն ք ի և բնաւ չը հետաքրքրուելով միջավայրով ու այդ միջավայրին վերաբերող խնդիրներով, նա աչքը միշտ պահած է հեռուն և մի յարմար առթի է սպասում՝ ազատուելու իր այդ դրութիւնից, ուսուչութեան պաշտօնից։*

*Ու դուրս է գալիս, որ հայ գիւղական ուսուցիչը իր ազատ ժամերը գործադրում է հաշուապահական, գրագրական (գրասենեակի), առեւտրական եւայլն առարկաներ սովորելու, ու նրան շատ քիչ են հետաքրքրում՝ մանկավարժութիւն, դպրոց, ուսուցչութիւն եւլն. որ մեր ուսուցչի համար այնքան էլ ցաւ չէ, թէ որքան կրստանայ ինքը այսօր, որքան բարձր է կանգնած իր, որպէս ուսուցչի, նիւթական և մտաւոր դրութիւնը, քանի որ դա իրեն համար մշտական չեն և ոչ էլ կենսական։ Նրան աւելի հետաքրքրում է իր ը ն տ ր ա ծ որեւէ ուրիշ ա ս պ ա ր է զ ը, որի համար և աշխատում է, և չարչարւում, և յառաջադիմում և ապրում, քան դպրոցը, ուր նա իրեն զգում է հիւր։*

*Ու մեր դպրոցն, ահա, իր բաւականի թիւ կազմող ուսուցիչներով՝ ո ւ ս ո ւ ց չ ո ւ թ ի ւ ն չունի...*

*Եւ ստեղծուած դրութեան պատճառը պարզ է.*

*—Տուէք մեր դպրոցներին ուսուցիչ—արուեստաւորներ, որոնք գնան այդ պաշտօնին՝ սրտանց, առանց յետ նայելու և առանց այս ու այն կողմ աչք տնկելու, կ ա պ է ք ո ւ ս ո ւ ց չ ի ն դ պ ր ո ց ի հ ե տ, ստեղծէք դպրոցում՝ այնտեղ պաշտօնավարողի համար մարդավայել ու տանելի պայմաններ և մենք կը դադարենք մեր դպրոցների դրութիւնը ողբալուց և այդ դրութեան համար ուսուցչութեանը մեղադրելուց։*

*Ղափան* *Յակ. Տէրունի*

## ՀԱՅ ՈՒՍՈՒՑՉՈՒԹԵԱՆ ԲՆՈՐՈՇ ՄԻ ԻՐՈՂՈՒԹԻՒՆ

*Վերջերս շատ գրուեց մեր ուսուցչութեան նիւթապաշտական («մատերիալիստականացման») և նախկին գերակայական («իդէալիստական») բարձրութիւնից իջնելու մասին։ Այդ խնդիրը թողնենք մի կողմ և յիշենք մօտիկ օրերս պատահած մի դէպք, որ ինքնին շատ բնորոշիչ է և ցոյց է տալիս մեր ազգային հիմնարկութիւններից կարեւորագոյնի՝ դպրոցի այժմուայ դրութեան եթէ ոչ միակ, գոնէ գլխաւոր պատճառը։*

*Մօտ օրերս մի քանի ուսուցիչներ՝ բախտի բերմամբ ամեն մէկը մէկ անկիւնից ու խուցից ելնելով՝ հաւաքուած են մի տեղ։ Սկսում են խօսել իրենց հետաքրքրող և իրենց կաշուին*

## ԳԱՒԱՌ

*ՔԱՐՎԱՆՍԱՐԱՅԻՑ ՈՒԶՈՒՆԹԱԼԱ, 27 հոկտեմբերի.—Կեանքիս ընթացքում շատ տեղեր եմ գնացել, բայց այս ճանապարհի պէս անկարգ ու անկանոն երթեեկութեան չեմ հանդիպել երբէք։ Ճանապարհորդը՝ ամեն մի կայարանում ենթակայ է միշտ զանազան խոչընդոտների և մինչև անգամ հասարակ կառապանի քմահաճոյքին։ Երբեմն ձի չի լինում, երբեմն կառք, կամ էլ եղած դէպքում կառքի անիւի, կամ այլ մասի կոտրած ու փչացած լինելը պատրուակ բերելով՝ ճանապարհորդը ստիպուած է լինում ժամերով և մինչև անգամ օրերով սպասելու։ Վճարում ես փողը և դուրս ես գալի օր. Ղազախից՝ Դիլիջան գնալու նպատակաւ, հետեւեալ կայարանում Աստուած գիտէ թէ որքան պէտք է սպա-*

սես և հարկ եղած դէպքումն էլ կռուես կառավարչի հետ, որպէս զի կարողանաս ճանապարհդ շարունակելու։ Որպէս կառավարչական հիմնարկութիւն՝ չ'պէտք է որ այսպէս լինի։

—Այս տարի ցորենի բերքը այս կողմերը անբաւարար էր. գիւղացիներ կան, որոնք բնաւ ցորեն չունին, այնպէս որ՝ սովը կարծէք սխտեմատիկ կերպով մուտք է գործում խեղճ գիւղացու չէմքը, քանզի Ռուսաստանի ալիւրն էլ, ինչպէսասում են, շատ քիչ է ներմուծւում Ղազախ շնորհիւ ներկայ գաւառապետի գործունէութեան։

Թանգութիւնը օր աւուր լայն ծաւալ է ստանում, որից օգտւում է թէ գիւղացին և թէ վաճառականը. (խօսքս այն գիւղացիների մասին է, որոնք ունեն ծախու եղ, պանիր, գետնախնձոր, կաղամբ, ոչխար են), միայն խեղճ ռոճկով ծառայողներն են, որ պապակւում են իրանց կաշուի մէջ։

Ա. Գ.

—

ՕՐԴԱԿԼՈՒ (Երևանի նահանգ), 4 նոյեմբերի.—Դարաչիչակ-Ծաղկաձորի շրջանում մօտ մէկ ամիս է որ Երևանի զօրանոցի և անհրաժեշտ հաստատութիւնների համար փայտ են տեղափոխում Փաչքեանդ և Արզաքեանդ գիւղերից։ Խեղճ գիւղացին, որ առանց այն էլ դժուարութեամբ է քարշ տալիս իր կեանքը, իր աշխատող ձեռքերի պատճառով ամենայն օր կռո է տարւում իր զոյգ եզներով և սայլով։ Բայց եթէ այդ կռո (օլամը) կանոնաւոր ձևի տակ լինի, գիւղացու մտքով անգամ չի անցնիլ խօսելու, քանի որ իւր հայրենիքի ապահովութեան և ազատութեան համար է։ Բայց ահա մեր գործիչների կատարած դերը։ Երևանի նահանգապետից հրահանգւում է պրիստաւներին, որ իւրաքանչիւր գիւղից, նայած գիւղի կարողութեան և մեծութեան, օրական 50 սայլ կռո (օլամ) գան փայտերը տեղափոխելու Երևան։

Իսկ գիւղի տանուտէրը փոխանակ 70 սայլ պահանջելու պահանջում է 100 սայլ, և որովհետև շատերը եզ չունին կամ կարևոր գործ ունին, կաշառում են տանուտէրին մի քանի ռուբլով, ու այդպիսով 30 սայլորդ ազատւում են կռոից մինչև միւս հրամանը։ Ահա. տղրուկներ և մակարոյծներ (պարազիտներ), որոնք ծծում են գիւղացու արիւնը։ Փայտը բառնալով սայլերի վրայ ճանապարհ են ձգում դէպի Երևան, ոստիկաններով և զինուորներով։ Երևանում դատարկելուց յետոյ՝ գործը անցնում է նա համարձակ յայտնում է սայլորդներին, թէ տուէք ինձ «նա չայ», որպէսզի ձեզ բաց թողնեմ տուն երթալու, ապա թէ ոչ նորէն կռոի դուռը կը տանեմ։ Խեղճ սայլորդները տեսնելով՝ որ եթէ չը համաձայնին հրամանին, պիտի զրկուեն իրենց զոյգ եզներից, իւրաքանչիւր օլամը կատարւում է վեց օրում, խեղճ անասունները անօթութիւնից կը սատկեն, բացի իրենց 20 ռուբ. ծախսից։ Եւ ահա մի քանի ռուբլի տալով ազատւում են թէ իրենց կեանքը և թէ անասուններին։ Եղած են դէպքեր, որ զէնք է բացել այն սայլորդի վրայ, որ չի կատարել իւր հրամանը։

Ինչ է լինելու այս խեղճ գիւղացու ապագան, եթէ այս դէպքերը շարունակուեն մինչև ապրիլ, ինչպէս խօսել է Ներքին Ախտայի պրիստաւը։ Կը քայքայուին տնտեսականապէս. հարկաւոր է ուշադրութիւն դարձնել և ազատել նրանց տղրուկների ձեռքից։

Ուսուցիչ Օրդակլու գիւղի ծխական դպրոցի
Վահան Աբրահամեան

—

ԲՈՒԹԱՅԻՍ.—Նոյեմբերի 5-ին այստեղի Հայ Կանանց Կոմիտէի նախաձեռնութեամբ՝ մեր ծխական դպրոցի շքեղ դահլիճում կայացաւ յօգուտ հայ գաղթականների մի շքեղ երեկոյթ։ Որովհետև տեղական ժողովուրդը և օտար հիւրերը հայերէն չէին հասկանում, տուին վրացերէն լեզուով «Ադամ և Եւա» ներկայացումը, որի մէջ իր անչափ շնորհալի խաղով բոլորին հիացրեց Միք. Ջանոյեանը։

Արդիւնքը եղաւ մօտ 250 ռ.։ Հետևեալ երեկոյթը կը լինի հայկական ներկայացումով։

Գովելի է հայ կանանց և իրանց նախագահուհի՝ տիկ. Ռաֆայէլեանի եռանդը։

Յուսիկ քահանայ Ապրիլեան

—

ՕԼԹԻ (Կարսի վիճակ), 13 հոկտեմբերի.—Այս շրջանի գիւղերի բնակիչները վերադարձել են իրենց տեղերը, իսկ Օլթիում բացուած է քաղաքային և պետութեան դպրոցները։ Շրջանի եկեղեցական-ծխական դպրոցների մասին հոգացող չկայ, լորն էլ փակ են մնացել։ Հայ գիւղացիք ուժասպառ ու քայքայուած դրութեան մէջ են, միայն իրենց երեխաները ուսումից զրկելու նպատակով գիւղերից խումբ խումբ երեխաներ, ծխական դպրոցի աշակերտներ բերում են Օլթի և յանձնում վերոյիշեալ դպրոցների ստորին բաժանմունքներում, այն էլ առաջինում ընդունելութիւն չեն կարող տալ, իսկ երկրորդ դպրոցում տեղ չկայ։

Սրանով գալիս եմ խնդրելու մեր բոլոր ընկերութիւններին և հաստատութիւններին՝ ի սէր մարդկութեան ու ազգասիրութեան թող բարեհաճեն այս 9 գիւղերից գոնէ մէկ տեղ, կամ Օլթիում, որ կենտրոն է, նպաստելու ծխական մի դպրոցի բացման, որ շատ երեխաներին կազատեն թէ փողոցներից և թէ կը դարձնեն հայ մայրենի լեզուի առաջադիմութիւնը։

—Նկատելի է, որ ամեն քաղաք թէ գիւղ, որտեղ կայ գաղթականութիւն, օգնութիւն են ստանում ապրելու, բժշկութեան և երեխաների կրթութեան համար, իսկ Օլթուայ շրջանը մոռացուած է բոլորովին։

Կարևոր եմ համարում յարակցել, որ ամսիս 8-ին Օլթիում ընտրութիւն կայացաւ Կարսի ու տեղիս Մեջլիսի անդամների։ Զովի առթիւ այնքան թուրքեր էին թափուել, որ փողոցներում անցուդարձի տեղ չկար, միայն ժողովին մասնակցող թուրքերի ձայնը 11 անգամ շատ էր հայերից։ Թուրքերից ընտրուեց երկու անգամ, իսկ հայերից մէկ։ Կարսի համար ընտրուեց Օլթեցի Զիւրբէգ Հաշիմբէգ օղլին։ Օլթու Մեջլիսի նոր ընտրուած անդամներն են՝ Յովհաննէս Բուրքչեանց (Օլթեցի հայ), Օրի գիւղացի Խալիլ Էլբէգ, Մուստաֆաբէգ օղլի և Ասկեարբէգ Աղաբէգ օղլի։ Վերջիշեալ ընտրութիւնը կատարուեց շատ խաղաղ կերպով, միայն Օլթուայ 40 տարուայ բնակիչ մի քանի հոգու զրկեցին քուէարկութեան մասնակցելուց, որովհետև չունէին հաստատուն վկայագրեր։

Մի ամսից աւելի է Օլթիում ժողովրդական հաց չէր թխւում, բարեբաղդաբար այդ միջոցին Կարսի զինուորական նահանգապետը եկաւ այստեղ և խոստացաւ 200 տոպրակ ալիւր Կարսից փոխադրելու. այսօր այդ ալիւրը ստացուեց և վաղը մի փուռ կը շարունակէ հաց տալ ժողովրդին։

Սարգիս քահ. Խալաթեան

—————

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Կ. Հ. Բ. Ը-թիւնը իւր 19-ն նոյեմբերին կայացած նիստում արել է հետևեալ որոշումները.

—Նոր ճիւղեր.—Յարգել Գիլինկովոյի և Ղամարլուի հասարակութեանց խնդիրները այդ վայրերում նոր ճիւղեր բանալու և դիմել նահանգական Ատենին թոյլտուութիւն ստանալու։

—Ալիղամարլուի ճիւղի վարչութեան խնդրի համաձայն

բօշուեց տալ պահեստի ընտանիքների գումարներից 10 աշակերտի թոշակագրամ 8-ական ռուբլի, ընդամենը 80 ռ.։

—Հաստատել Բաթումի ճիւղի Վարչութեան նորընտիր անդամների պաշտօնները.—նախագահ՝ Մ. ա. ք. Մելեան, փոխ-նախագահ՝ Ե. Մանթաշեան, գանձապահ՝ Շ. Սայիբեան, անդամներ՝ ... Ն. Միհրանեան և Ղ. Թերզեան, քարտուղար Ղ. Թերզեան։

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Թիֆլիսի Փոխադարձ վարկի Ընկ. ծառայողներից յօգուտ փախստականների 12 ռ. 64 կ.։

## ԾԻԽՂԵՐ

Կ. Հ. Բ. Ը-թեան Բաթումի Վարչութիւնը շնորհակալութեամբ ստացել է յօգուտ Բաթումի որբանոցի Եկատերինոդարի Հայկ. Կոմիտէի փոխադրած նոյն քաղաքի Տրապիզոնցիների միութեան միջոցով հանգանակած գումարից 377 ռ.։

***

Կարսի ճիւղի որբանոցին դրամական նուէրները՝ Գոլթուխչեան ընտանիք իրենց որդու մահուան առթիւ 50 ռ., Հմ. Աւետիսեան Գոլթուխչեան որդու մահուան առթիւ 20 ռ., Յով. Միքայէլեան Գոլթուխչեան որդու մահուան առթիւ 20 ռ., Կոստանեան 5 ռ., տիկին Հ. Մասճեան 45 ռ., Գ. Տէր-Առաքելեան դըստեր մկրտութեան առթիւ հաւաքուած 81 ռ., Հ. Մանկասարեանի նշանտուքին հաւաքուած 90 ռ., Յով. Գապովեան Մարուղեանի գագաղին պսակ դնելու 15 ռ., Կ. Մկրտիչեան 50 ռ., Տիկին Ֆադանճեան 25 ռ., Յով. Մուրադեան իւր որդու մահուան առթիւ 100 ռ., Ստ. Խանպէկեանի աղջկայ նշանդրէքին հաւաքուած 70 ռ. 15 կ., տ. Տիրուհի Մարտիրոսեան Ջինիճեան 20 ռ., Արշակ Փորսողեան իր եղբօր Մկրտիչի յիշատակին 20 ռ., որի յիշատակին նուիրել են նոյնպէս Կարապետ Փորսուղեան 5 ռ., Եղբարք Աւետիսեաններ 25 ռ., Հաճի պապ Արոյեան 5 ռ., Թ. Ապաճեան 5 ռ., Մխիթ. Տէր-Սաղաթիէլեան իր դստեր յիշատակին 25 ռ., Խաչ. Ջանպոլատեան Վարս. Ջալալեանի յիշատակին 25 ռ., Մարտ. Մատինեան Արխ. Ջարահեանի յիշատակին 20 ռ., Մկ. Սողոմոնեան իր եղբօր յիշատակին 100 ռ., տ. Թագուհի Ցակոբեանի յիշատակին 30 ռ., նոյն տիկնոջ յիշատակին Յար. Ալայեան 10 ռ., Սաղաթէլ Տէր-Ներսէսեան 5 ռ., հանգուցեալ Գուրգէն Տիգրանեանի յիշատակին մի ոմն 20 ռ., գումարը 886 ռ. 15 կ.։

***

Ախալցխա, նոյեմբերի 18-ին.—Կ. Հ. Բ. Ը-թեան Ախալցխայի ճիւղի որբանոցի օգտին սեպտեմբերի 5-ից մինչև այսօր ստացուել են նուէրներ պ. պ. Գ. Բուռնուսուզեանից 25 ռ., Խաչ. Շուշ. և Ովկ. Եարամիշեաններից 15 ռ., Մ. Ղազազեանից (Նալչիկից) 50 ռ., Գ. Մարքուպճեանից՝ Ցակ. Չերքէզեանի նշանադրութեան հանդէսին հանգանակած 20 ռ. 20 կոպ., Սեդր. Սվաղճեանից՝ իւր ընկ. շրջ. հանգանակած 9 ռ. 50 կ., Ս. Վարդևանեանից (Ճանճղա գիւղից) 10 ռ., Յար. Մկոյեանից (Պեժանոյ գիւղ.) 5 ռ., Ար. և Գ. Բայբուրդցեաններից՝ իրանց տան հանդէսին հանգանակած 26 ռ., Հաջի Լևոն Խզարճեանից՝ իւր ընկ. շրջ. հանգանակած 25 ռ., Սեդր. Սվաղճեանից 50 ռ., Վ. Ալբէրթեանից իւր տան խնջոյքին հանգանակած 17 ռ., Սեդր. Սվաղճեանից իւր ծանօթների շրջ. հանգանակած 23 ռ. 95 կ., Յար. Մանուկեանից իւր հանգուցեալ մօր յիշատակին 50 ռ., Գող. Խաչատրեանի միջոցով Ցակ. Մէհճեանի տան խնջոյքում հանգանակած 40 ռ., լաքէյ (սպասաւոր) Վ. Անանիկեանը Յ. Չերքէզեանի տան խնջոյքին իւր աշխատավարձը 15 ռ., Սեդր. Սվաղճեանից՝ պ. Ղարագեօզեանի տան հարսանիքին հանգանակած 36 ռ. 25 կ., Օքրոպակերտցի Յ. Մազմանեանից 2 ռ., Աւ. Հասանդալեանի երեխայի մկրտութեան հանդէսին հանգանակած 25 ռ., Յովհ. Վարդապետեանից 1 ռ., Գր Մարքուպճեանի միջոցով Գող. Խաչատրեանի տան խնջոյքին հանգանակած 20 ռ., Քր. Մինասեանից 3 ռ., Ս. Վանցեանի միջոցով Յարոյեաններից 25 ռ., Սեդր. Սվաղճեանից 1 ռ., Յակ. Քրիստոստուրեանից 2 ռ., Մ. Զթճեանից՝ իւր հանգ. մօր յիշատակին 10 ռ., Մ. Մարգարեանի և Գ. Բարսեղեանի մատաղի սեղանակիցներից՝ Սեդր. Մանասեանի միջոցով 50 ռ., Ար. Ծիրացեանից՝ իւր հանգուցեալ հօր՝ Համազասպ Ծիրացեանի յիշատակին 100 ռ., Յ. Արէլեանից 100 ռ., պ. Սեդր. Սվաղճեանից 5 ռ., Յար. Կանցեանից 25 ռ., Սող. Քիւրքճեանից 1 ռ. 34 կոպ., Ս. Վանցեանից՝ իւր ընկ. շրջ. հանգանակած 3 ռ., Владиміръ Гуссаковскій 5 ռ., Վահան Ղուրպանեանի միջոցով Խ. Ժամկոցեանի հարսանիքին հանգանակած 13 ռ. 10 կ., Լ. Յարութիւնեանից 8 սայլ վառելափայտ և այլն, որոնց Որբախնամ Մասնախումբս յայտնում է իւր շնորհակալութիւնը։

Մասնախմբի նախագահ՝ Խ. Թէխմիշճեան

## ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Հ. Կ. Կոմիտէն Եկատերինոդարի Հայկ. Կոմիտէից ստացաւ յօգուտ Տրապիզոնի աղէտեալներին 1462 ռուբլի։

***

Գեն. Թամամշեանի կարգադրութեամբ Մուշում բացուեց գաղթականների համար սննդատու կայան։

***

Հ. Կ. Կոմիտէի Ախալքալաքի որբանոցին կից բացուած է արհեստանոց կօշիկներ պատրաստելու համար։ Որոշուեց Ախալքալաքում բաց անել դարձեալ մի որբանոց 100—130 որբի համար և կարգադրուեց Ղզլարի 30 որբերին տեղափոխելու Ախալքալաք։

***

Գեն. Թամամշեանի տնօրինութեան ներքև գտնուող պահեստից Վանի և շրջանի գաղթականների համար 480 ձեռք կանանց, տղամարդու և երեխաների շոր տրուեց, որը Հ. Կ. Կոմիտէի բժնատարքով փոխադրուեց Վան, շրջանապետի և Կոմիտէի լիազօրի անունով։

***

Խնուս-Մուշ շրջանի համար ևս միևնոյն պահեստից ուղարկուեց 1100 ձեռք շորեղէն։

***

Որբանոցների յանձնաժողովը յատուկ քննութեան է ենթարկել որբերին արհեստներ սովորեցնելու խնդիրը, որի համար խորհրդակցութեան են հրաւիրուած մասնագէտներ. այլ և մշակում է որբանոցներին վերաբերեալ զանազան ընդհանուր հրահանգներ (օր. հաշուետուութեան ձևը, ըստ տարիքի և սեռի բաժանումը ևն), Ծննդեան տօների առթիւ գումարուելիք ընդհ. խորհրդակցութիւններին ներկայացնելու։

***

Հ. Կ. Կոմիտէի գաղթ. մասնաժողովը նոյեմբ. 13—19-ը արժամանակեայ նպաստ է տուել 160 ռ. 86 կ. կոյր, հիւանդ և անկեալ գաղթականներին։

---

ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

## ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Նոյեմբերի 17—23 ը

Ալիւր՝ ուղարկում է հետևեալ վայրերը. Ղամարլու՝ 1 վագոն, Երևան՝ 2, Ալէքսանդրապոլ՝ 2, Ղարաքիլիսա՝ 2,

Ղարանլուղ 1, Նոր-Բայազէդ և Ելենովկա 100-ական պարկ։

—

Վան—Օհանջանեանից

Կեանքը շրջանումս սկսում է ընդունել սովորական գրութիւնը. խնդրում եմ շուտափոյթ ուղարկէք տաք հագուստներ։

—

Բագու—Հ. Տէր-Միքայէլեանից

Այսօր քաղաքապետը (գրադոնաչալնիկը) հեռագրեց Թամամշեանին, որ ինձ թոյլ է տրուած արտահանել վեց վագոն բրինձ։ Հարկաւոր է շուտափոյթ ուղարկել նարեադ. ստիպուած կը լինենք վճարել պահեստի վճար (за храненіе).

—

Եկատերինոդար—Մելքոնեանից

Գնեցի 3 վագոն սապոն, տուի 3 հազար ռ. կանխավճար. շուտով տեղափոխեցէք 50 հազար ռ.։ Այս հեռագրին ի պատասխան տեղափոխուած է 50 հազար ռ.։

# Քրոնիկոն

Նոյեմբերի 22-ին արքայական պալատում բացուեց Փոխարքայի Խորհրդի նիստը, որը զբաղուելու է Փոխարքայի դիւանատան մշակած Անդրկովկասեան համայնական (զեմստվոյի) օրինագծի քննութեամբ.

Բացի Փոխարքայի Խորհրդի բոլոր անդամներից խորհրդակցութեան մասնակցում են երկրագործական նախարարութեան կոմս. լիազօր Շաչկովսկին, շրջանային զեմստւային խորհրդակցութեան ներկայացուցիչներ՝ Ա. Ի. Խատիսեան (փոքրամասնութիւնից) և իշխ. Դ. է Ջելոկայե (մեծամասնութիւնից), նահանգապետները և գաւառապետները։ Խորհրդակցութիւնը տեւելու է մի քանի օր, որից յետոյ ժողովի որոշումները և օրինագիծը կը ներկայացուի Փոխարքային ի հաստատութիւն։

***

Վախճանուել է ամերիկական յայտնի և համաշխարհային հռչակ վայելող գրող Ջէկ Լոնդոնը 40 տարեկան հասակում.

***

Ամսիս 19-ին Թիֆլիսից Բագու ճանապարհուած մարդատար գնացքը «Բարդիւչէտ» կիսակայարանի մօտ խորտակուել է։ Հետեւեալ օրն եւս խորտակւում է Բագուից Թիֆլիս եկող ապրանքատար գնացքը «Մալայ» կիսակայարանում։

***

Քաղաքային Վարչութեան ֆինանսական և տրամվայի յանձնաժողովների խառն նիստում, տրամվայի եկամուտները աւելացնելու համար որոշուած է իննը 3 կոպէկանոց գծերի տոմսերից 7-ը դարձնել 5 կ., երկուսը թողնելով նոյնը։ Հիմնել կայարաններ, մէկ կայարանի երթեւեկութեան համար նշանակել 5 կ., երկուսին՝ 10 կ. (այժմեան 5 կ.)։ Այսպիսով կարծում են որ տրամվայի եկամուտը կաւելանայ տարեկան 700,000 ռ.։ Բայց այդ շատ սխալ հաշիւ է, քանի որ որքան տոմսերի գինն աւելանայ, նոյնքան կպակասի նաև նստողների թիւը, ինչպէս օրինակ Պետրոգրադ ելէքտրաքարշի գները բարձրացնելուց յետոյ՝ առաջուայ եկամուտը պակասել է և նստողների թիւը պակասել. իսկ Մոսկուայի տրամվայի գինը կրկնապատկելու որոշումը չի հաստատուել։

Ուրբաթ, նոյեմբ. 25-ին վախճանուել է հայ գրող և «Ընկեր» թերթի խմբագիր Ս. Թառայեանը։

***

Երևանում արեւմտահայ գրասէրների մի խումբ է կազմուել, որ սկսել է դասախօսութիւններ կարդալ։

***

Նոյեմբերի 24-ին «Աղբիւր-Տարազի» գեղարուեստական Սալոնում ցուցադրուեցին Երևանի Վանեցի ոսկերիչ փորագրիչների արծաթէ իրերը։

***

Նոյեմբ. 25-ին Հայ Գրողների Ընկերութեան Գրական երեկոյթին՝ բանաստեղծ Յովհ. Թումանեան տուեց մի զեկուցում հայկական լեզուի մասին. զեկուցումից յետոյ տեղի ունեցաւ վիճաբանութիւն։ Յաջորդ անգամ կըտանք երեկոյթի հաշուետուութիւնը։

***

Աւետիք Ահարոնեանը կրկին հիւանդացել է. բժիշկները խորհուրդ են տալիս հիւանդին նորէն Կիսլովոդսկ գնալու։

***

Ամսիս 27-ին, կիրակի առաւօտեան ժամի 12-ին մեր մանկավարժութեան հայր Սեդրաք Մանդինեանի տարելիցքին, Խոջիվանքի գերեզմանատանը կատարուելու է հոգեհանգիստ։

# Արտաքին տեսութիւն

## ԲԻՍՄԱՐԿԸ՝ ՄԱՀՈՒԱՆ ՆԱԽՕՐԵԱԿԻՆ

Ֆրանսացի գրող Շառլ Ֆոյէյը Դանիացի բժ. Դարվինգի հետեւեալ հետաքրքրական պատմութիւնը առաջ է բերում Գերմանիոյ դիւտնապետ (կանցլեր) իշխան Օտտօ Բիսմարկի կեանքի վերջին ամիսների մասին։

I

Աւելի քան 16 տարի առաջ էր. դեռ այն ժամանակ, երբ ես պրակտիկայով էի պարապում Շլէզվինգ-Հոլշտայնում։ Աշնանային մի խոնաւ օր էր, ցեխ, անձրև, մառախուղ… Չնայած անտանելի եղանակին, ես դողդողում էի գաւառական բժշկի զզուելի սայլակում, երբ իմ ետեւից ուղարկեց մի ականաւոր պրուսացի, որը երբեմն-երբեմն տրամադրւում էր խորհրդակցել ինձ հետ, չնայած, որ լաւագոյն մասնագէտներ միշտ էլ կային նրա տրամադրութեան տակ։

Պրուսացի այդ ազնուականը, որի մասին խօսում եմ, մեծ դեր է խաղացել գերմանական քաղաքականութեան մէջ, և մասնակցել Ֆրանկո-Պրուսական 1870 և 1871 թ. թ. սարսափելի պատերազմին։ Մենք դեռ չգիտէինք, որ աւելի սարսափելիները կարող են լինել, այնպիսիք, ինչպիսիք պատահում են այսօր։

Իր թագաւորին մեծ ծառայութիւն մատուցելուց յետոյ, ծեր ազնուականը իր սեփական կալուածն էր առանձնացել *)։ Նա փողի կարիք չունէր, միայն այն անտառները, որոնց միջով ես անցայ, տարեկան 350 հազար մարկ եկամուտ էին բերում։

Իմ սայլակը կանգ առաւ մի երկյարկանի, բարձր շինութեան առաջ։ Այստեղ ինձ յայտնեցին, որ տանտէրը՝ չնայած անձրեւին ու մառախուղին, հրամայեց տանել իրեն պարտէզ, իր սիրած տեղը։ Ես ուղեկցուեցի այնտեղ։

Ծառուղիներից մէկի թեքուելու տեղում տեսայ գերմանական կայսրութեան այդ նշանաւոր գործչին։ Նա նստել էր մի բարձր, ճիւղաւորուած եղեւնու տակ դրուած նստարանի վրայ։

*) Ֆրիդրիխսրուհէ, ոչ հեռու Համբուրգից։

*—Ահա թէ ինչպէս եմ վերջացնում կեանքս, կատաղութեամբ քարքանջեց նա—անդամալոյծ, անուաթոռի վրայ, անթացուպերով* (костыль)։

*Սա երկաթի կանցլեր Օտտօն Բիսմարկն էր։*

II

*Այդ Ֆրիդրիխսրուէհում նրա հետ ունեցած իմ վերջին տեսակցութիւնը չէր։ Ես Բիսմարկին տեսայ 9 ամիս յետոյ 1899 թ. յունիս 30-ին՝ նրա մահուան օրը։*

*Ինձ շտապ կանչեցին, յայտնելով, որ իշխանը մեռնում է։ Բիսմարկի սենեակում էին նրա աղջիկն ու փեսան։ Նրանք մի կողմ քաշուեցին, հնարաւորութիւն տալով ինձ հիւանդի մահճին մօտենալու։*

*Բիսմարկն ինձ տեսնելով փորձեց ժպտալ։*

*—Տեսնում էք, բժիշկ—ասաց նա—գործս վատ է. ես մեռնում եմ։ Եթէ միայն ես կարողանայի համոզուել, որ գերեզմանումս յաւիտենական հանգիստ կըգտնեմ։ Իսկ այստեղ քունն անդադար փախչում է ինձնից ու մաշում ինձ։*

*Երեւում էր, որ անքնութիւնը նրան տանջել, թուլացրել էր. Նրա ձայնը իջաւ, թուլացաւ, ցածրացաւ, մինչեւ շշուկի հասաւ։*

*—Իմ երկար կեանքի ամբողջ ընթացքում ես ոչ մի մարդու չեմ երջանկացրել—տխրութեամբ ասաց նա—ոչ շրջապատողներիս, ոչ ծառայողներիս, ոչ հարազատներիս և ոչ նոյնիսկ ինձ։ Ո՛չ մի բարեկամ չունեմ։ Ես արհամարհել եմ մարդկանց՝ անտես առնելով նրանց գոյութիւնը։ Նրանք էլ իրենց հերթին անիծել, անտես են առել ինձ։ Ես երեք պատերազմի պատճառ եմ դարձել։ Իմ պատճառով 100,000-ից աւելի մարդիկ թաղուած են դաշտերում, որոնց մինչեւ այժմ էլ ողբում են նրանց աղջիկները, քոյրերը, այրիներն ու մայրերը։ Ես շատ մեծ չարիքներ եմ գործել, բայց այդ իմ և Աստծու մէջ է, ոչ ոք դրա հետ գործ չունի։ Ո՛չ ոք ոչինչ չի կարող ասել ինձ։ Իմ ամբողջ կեանքում ես նոյնիսկ երջանկութեան մտապատրանքն անգամ չեմ ունեցել։ Այսօր ես զգում եմ մահուանս մօտիկութիւնը և տխրում եմ, ցաւում...*

*Նա կանգ առաւ. արցունքի խոշոր կաթիլները գլորուեցին նրա այտերի վրայից։*

*Բիսմարկն արտասուեց։*

*Շուտով հանգստացաւ։ Ձեռները սառեց ձեռքիս մէջ։ Ես յուզուած լսում էի. մեռնողի սիրտը շարունակում էր խփել։*

*Լուսամուտի ետեւը մրրիկը ճայթեց, ամպը որոտաց, կայծակը փայլեց։*

*Բիսմարկը չշարժուեց. ես նոյնպէս վախեցայ շարժուելու, որպէսզի չանհանգստացնեմ նրան։ Մտածում էի, որ րոպէ առ րոպէ մահը վրայ կհասնի, որ այս խորտակուած հսկան այլեւս չի զարթնի և անզգայ, հանգիստ կը փոխադրուի մի այլ աշխարհ։*

*Բայց յանկարծ մեռնողն ուղղուեց, լայն բացեց աչքերը և երկու ձեռներով սկսեց վանել իրենից ինչ-որ բան, ըստ երեւոյթին այնչափ սարսափելի նրա համար, այնպէս որ նրա աչքերում սարսափի մի անմիտ արտայայտութիւն երեւաց։ Երկու րոպէ շարունակուեց այդ հալածանքը, երկու րոպէ նա կռուեց իրեն շրջապատող այդ տեսիլքի հետ և յետոյ անշունչ ընկաւ մահճի վրայ։*

*Թարգմ. ռուս. Խ. Եղանեան*

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՄԻ ԼՐԱՑՈՒՑԻՉ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ ԲՈՒԼԱՆԸՂԻ ԿՈՏՈՐԱԾԻՆ

*Վերին և Ներքին Բուլանըղի հայ ազգաբնակչութեան կրած ահռելի կոտորածին պատմութիւնը պարբերաբար լոյս տեսաւ «Համբաւաբեր»-ին մէջ*)։ Իբրեւ մասնաւոր և լրացուցիչ տեղեկութիւն Լիզի կոտորածին՝ (Համբ.-ի 43-րդ համ.-ում) հարկ եմ համարում տեղեկագրելու նաև հետևեալ երկտող մանրամասնութիւնը, որ պատմած է դարձեալ բնիկ Լզեցի Զաքար Գէորգեան Սիմոնեանցը, որ այժմ ապրում է տեղում։*

*Լզայ սարսափելի ջարդը եղած, վերջացած էր՝ յունիս 28-էն սկսեալ, արցունքոտ աչքերով պատմում է յիշեալ Զաքարը, գիւղին մէջ ողջ թողնուած էին միմիայն 18 երիտասարդ, որոնք իբրև ջրաղացպաններ աշխատում էին գիւղի սեփականութիւնն եղող 9-ը ջրաղացներում։ Պատերազմի պատճառաւ թուրք կառավարութիւնը զօրքերուն անհրաժեշտ քանակութեամբ ալիւր մատակարարելու նպատակով ջրաղացները, նախքան կոտորածը, բռնի վար դրած էր։ Իբրև վարպետների, յիշեալ երիտասարդները զերծ էին մնացած ընդհանուր կոտորածէն։*

*Գոլսէն՝ այդ օրերը նոր եկած բանակի հրամանատարը, ամեն օր ստիպում է ջրաղացպաններուն, որ անհանգիստ կերպով աշխատեն, որպէսզի ժամանակին հետ զօրքերուն հարկ եղած քանակութեամբ ալիւր կարողանան հասցնել։ Նոյնիսկ երբեմն անձամբ այցելում է ջրաղացները և տեսնելով խեղճ ջրաղացպաններու մեղուական աշխատութիւնը, «Աֆէրիմ, օղուլլարըմ (կեցցէք զաւակներս), հայերուդ մէջ սատըգանէ (հաւատարմօրէն) աշխատողներ որ կան դուք էք, ձեր հաւատարմութեան համար, մի վախնաք, ոչ ոք իրաւունք ունի ձեզ մօտենալու, լաւ աշխատեցէք, վարձքի մասին հոգ մի ընէք...», և այլ մի շարք սուտ յոյսերով կը քաջալերէր խեղճերուն, որոնք չհաւատալով հրամանատարի շռայլած նենգամիտ քաջալերական խօսքերուն, և մանաւանդ օղակուած լինելով թուրք և քիւրդ խաժամուժ զօրքերով՝ յուսահատ ու ճարահատ անցնում են իրենց սև օրերը ալիւր պատրաստելով։*

*Սակայն կոտորածը հրդեհի նման սկսած էր տարածուել Բուլանըղի միւս հայաբնակ գիւղերու մէջ։*

*Մի օր էլ յանկարծ, երեկոյեան ժամի 5-ին, բանակի հրամանատարի կողմէ կանչուում են ջրաղացպանները՝ վարձքերը տալու պատրուակով։ Ձեռքերը շղթայակապ՝ առաջնորդում են հրամանատարի քովը. հրամանատարը տեսնելով զանոնք, «Խասապ թապուրի»**) զօրքերէն մի քանիներուն յանձնում է, պատուիրելով, որ «հաւատարիմ» ջրաղացպաններուն տանեն և ըստ արժանոյն վարձատրեն ոչ թէ գնդակով կամ սուիններով սպանել, այլ պալթաներով (կացին)»։*

*Ոճրանիւթ հրամանատարի հրամանը կատարում են նոյն րոպէին, տանելով «հաւատարիմ» ջրաղացպաններուն գիւղէն մի քիչ հեռու, ու այնտեղ տապարներու հարուածին տակ մեռցնում ու դիակները ձգում նախապէս պատրաստուած փոսերուն մէջ։*

*Սպանուող ջրաղացպանների անունները.—*

*1. Հայրապետ Մանուկեան, 2. Աղջոյ Յովէեան, 3. Արշակ Մկրեան, 4. Արամ Մկրեան, 5. Կինդար Յարոյեան, 6. Հայրօ Սայիսեան, 7. Գէորգ Աւէեան, 8. Եղօ Ղազարեան, 9. Հլղաթ Սաֆարեան, 10. Սարգիս Սուքոյեան, 11. Բդոյ Վրդոյեան, 12. Արթին Մուխսիեան, 13. Մկրօ Սայիսեան, 14. Մկրտիչ Հազրոյեան, 15. Մարգար Սիմոյեան։*

---

**) Տես Մ. Ղարաքիլիսայէն պ. Ս. Մովսիսեանի «Բուլանըղի կոտորած» վերնագրով յօդուածները, «Համբաւաբեր» № № 12, 13, 43 և Երեւանի «Աշխատանք»ի № 26 համարները։*

***) Կոտորածի ժամանակ կազմուած էր թուրքական Խասապ թապուրներ (մսագործի նման մարմին ջարդողներ), որոնք զինուած էին կացիններով և մահառիթ գործիքներով։*

*Գ. Մ.*

*Իսկ մնացած երեք հոգին՝ Դաւաղ Սարգիսեան, Օհան Աւոյեան և Գէորգ Շահինեան յաջողում են փախուստ տալ և կեանքներն ազատել տեղի ունեցած քստմնելի ոճիրէն։*

*25 հոկտ. 1916*
*Համամլու*

*Գ. Մանասեան*

# Գեղարուեստ

## ՅԱՂԹԱԿԱՆ ՎԵՐԱԴԱՐՁ

I

*Բացէք դուռը մեհեանի՝ Արամազդի վէս որդուն.*
*մեծ դարպասի նեղանցքէն մինչև ներսը տաճարի՝*
*անձրևեցէք բիւր փնջեր ոսկի ցորեն-հաճարի.*
*շեփորեցէք շեփորը խրոխտագոռ և յորդուն,*
*զի վերադարձն է այսօր ռազմիկներուն քաջարի...*
*բացէք դուռը մեհեանի՝ Արամազդի վէս որդուն։*

*Թող շիկանայ, թող բոցուի աստուածներու հարթ բագին.*
*դուք, աղջիկներ գեղանի, շուշանաքօղ, վարդ հագին՝*
*ճակատը ձեր քաջերուն, ո՛ն, օծեցէք եղ-ջրով.*
*բացէք սեղանը բոյրի, վայելքներու տարփագին,*
*գինի տուէք յաղթողին իշխանական եղջիւրով։*

*Դէհ, աղջիկնե՛ր, դիւթեցէք ձեր հայեացքովն ալ հատու՝*
*սրտերը պիրկ, առնական՝ դարձողներուն յաղթապանծ.*
*զի մարտին մէջ անհուօր, արերն անոնց անթափանց*
*ընկրկումի՝ սոսկին տուին հարուած մահատու...*

*Զի անգիտակ են անոնք սարկութեան, ան-դողին.*
*զի շարքին մէջ սոսկին սարսափ, արիւն, մահ թողին։*
*փառք և պատիւ, բիւր վայելք մարտնչողին, յաղթողին...*

II

*Արեւելքը վարդացաւ, ծփաց ծովակը Վանայ.*
*դարպասը մութ Երկնքին դուռն իր անհա կը բանայ.*
*եւ դուրս կ'ելնէ՝ Լոյս-Արքան հագած շքեղ ծիրանի,*
*անցնելու մեր լեռներէն մինչև դաշտերն Իրանի...*

*Փահոյքներէն, սեղանէն ոտքի ելնենք ու վա՛ր գանք,*
*օգոստափառ Արևին տանք մեր ողջոյն, մեր յարգանք.*
*արինը թող գեղգեղէ, և թող հնչէ սուրբ բանդիռ,*
*հպարտօրէն ծունր իջէք, որ օրհներգենք ներբաթիռ.*

*— «Ողջո՛յն քեզ, Արփի,*
*դո՛ւ, հզօր արքայ,*
*ուժըդ թող վար գայ,*
*եւ թող մեզ տարփի»...*

*«Տո՛ւր ուժ մեր բազկին,*
*սրտերնիս բոցէ.*
*ո՛վ Արքայ, գոցէ*
*վէրքը մեր ազգին»...*

*«Օծի՛ր մեզ, Արփի՛,*
*լուսովըդ վարար.*
*թող աշխարհն արար*
*Սէր-Բոյրով հարբի...*

**Ազատ-Վ. Ռուբէնի**

---

## ԴՐՈՒԱԳՆԵՐ

*Ու դալկադէմ*
*Պատկերին դէմ*
*Աշունին,*
*Կը թախծի սիրտս,*
*Հին երազներս*
*Կ'արիւնին...*

*Սիւքերն անվերջ*
*Ծառերուն մէջ*
*Կը սգան...*
*Հոգիէս ներս*
*Տրտում խոհերս*
*Կը կոխան...*

*Ամպերը լուռ՝*
*Մահասարսուռ՝*
*Կ'արտասուէն.*
*Հեքոտ՝ մռայլ՝*
*Յուշերս անցեալ*
*Կ'անհետին...։*

*Հ. Արտուր*

# Գրականութիւն

### ՍՈԿՐԱՏԻ ԱՍՏՈՒԱԾԱՈՒՆՉԻՒՔԸ

*Մի անգամ Սոկրատ իմաստունն զբօսնում էր աշակերտների հետ Պերիկլէսի այգիների միջով և զրոյց էր անում գեղարուեստի և նրա աստուածային հրաշալիութեան մասին։ Ալքիբիադէսը թեթևամտաբար ժպտալով հարցրեց.*

*—Ասա մեզ, Սոկրատ, ինչպէս ուսար արձաններ շինելը և ինչպէս էիր աստուածուհիք ստեղծում։ Եւ պատճառն ինչ էր, որ կատարեալ վարպետ դառնալուց յետոյ գեղարուեստը թողիր։ Չէ՞ որ դու կարող էիր մարմարից իմաստութեան աստուածուհի ստեղծել։*

*—Ես ձեզ կը պատմեմ թէ ինչպէս էի արձանագործութեամբ պարապում, պատասխանեց Սոկրատը. այն ժամանակ, Ալքիբիադէս, ինքդ կը դատես, արդեօք ձեռնտու է ինձ համար կրկին քանդակագործի դուրը ձեռն առնել. «երբ ես դեռ աշակերտ էի, ամբողջ սրտով սիրում էի գեղարուեստը։ Այցելում էի արուեստագէտների գործանոցները և աստուածների տաճարները, յուսալով, որ գործանոցներում կը գտնեմ մարդկային ուսում, իսկ տաճարներում աստուածային ոգևորութիւն։*

*Այդպիսի մտադրութեամբ մի անգամ Ցունաստանի սահմա-*

նի մօտ մտայ մի փոքր հնօրեայ տաճար, որ նուիրուած էր աստուածուհիներին։

Տաճարի պարզութիւնն ինձ շատ գրաւեց, ներս մտնելիս մտածում էի. «երևի այստեղ իմ արուեստաճիւղի համար բան չեմ գտնելու, մի՞թէ կարող է այստեղ մարմարէ արձան լինել։ Փոխարէնը կարող եմ այստեղ միտքս մարզել պարզութիւնն ըմբռնելու։ Այդ էլ անհրաժեշտ բան է արուեստագէտի համար։ Այս ասելով ներս մտայ։ Փոքր տաճարի դռների մօտ ինձ հանդիպեց սիրալիր դէմքով մի պատկառելի ծերունի.

—Այստեղ ի՞նչ ես փնտրում, որդեակ, հարցրեց ինձ մեղմ ձայնով։

—Գեղարուեստ ուսումնասիրող եմ, ասի նրան, այդ նպատակով այցելում եմ տաճարները։

—Լաւ ես անում, որդեակ, պատասխանեց նա, որ նախ քան աստուածային իր ստեղծելը, սկսել ես քեզ կրթելով կատարելագործել, որանով դու քեզ մօտեցնում ես աստուածութեանը։ Քո ձգտումն առանց վարձատրութեան չի մնալ։ Ես քեզ ցոյց կը տամ այն, ինչ որ դու զուր կը փնտրէիր ողջ Յունաստանում, քեզ ցոյց կըտամ լուսափայլ աստուածուհիների ամենահին և նախնական պատկերները։

Յետոյ նա մատնացոյց անելով երեք քառանկիւնի կոպտատաշ քարեր ասեց.

—Ահա։

Ես նայեցի ծերունու վրայ և լռեցի։ Իսկ նա ժպտալով շարունակեց խօսքը.

—Թող քեզ զարմանալի չըթուայ, բայց քեզ ասում եմ, որ աստուածային բանը, նախ քան մարդկային լեզուի ու մատների միջոցով արտայայտուելը, արդէն ապրում էր մարդկանց սրտերում։ Եթէ դու, որդեակ, կամենում ես քո յարգանքը արտայայտել աստուածութեանը, ցոյց տուր քո բոլոր հմտութիւնը արձանագործութեամբ։ Այժմ ների՛ր ինձ, պարտքս կոչում է, ես այս տաճարի քուրմն եմ։

Նա գնաց ինձ թողնելով տարօրինակ տրամադրութեան մէջ։ Ես վերադարձայ Աթէնք և մարմարից ստեղծեցի իմ աստուածուհիներին։

Դուք այդ տեսել էք, գիտէք։ Նրանց ընծայ տարայ այն տաճարի քրմին և անվստահ դողդոջուն ձեռներով մատուցի նրան։

—Գեղեցիկ է, որդեակ, ասեց քաղցրադէմ ծերունին, աշխատանքդ մեծ ուշադրութեամբ և սիրով ի կատար ես ածել, սակայն ասա ինձ, միանգամայն գո՞հ ես քո ստեղծածով

—Ո՛հ, ամենևին ոչ, պատասխանեցի տխրութեամբ. հոգուս մէջ ապրում է աստուածութեան աւելի վեհ պատկեր, քան թէ այս, բայց զգում եմ, որ ձեռներս անզօր են արտայայտելու...

Այդ միջոցին ծերունին ձեռը դրեց ուսիս և խօսեց զարմանալի հեզութեամբ.

—Երբ որ այդպէս է, քո գեղեցիկ անդրիները տար յանձնիր Աթենացի հարուստների դահլիճներին և մեզ համար թող մեր քարերը։

Տեսնո՞ւմ ես, որդեակ, մեր պարզութեան հետ մենք ունենք հաւատ. այդ ունենալով մեր սրտերում՝ բաւականանում ենք մեր հասարակ պատկերներով։ Աթէնքի մեծատունները ունեն միայն գիտութիւն, ուստի նրանց հարկաւոր են գեղարուեստօրէն շինած պատկերներ։ Իսկ ես խորհուրդ եմ տալիս քեզ. ճանաչիր աստուածային այն կայծը, որ վառւում է թէ քո մէջ և թէ բոլոր մարդկային սրտերում, այն ժամանակ կարող կըլինես կրթել ու կատարելագործել աստուածայինը թէ քո և թէ ուրիշների մէջ»։

Այս խօսելուց յետոյ ծերունին թողեց ինձ և հեռացաւ։ Իսկ ես վերադարձայ իմ արձանների մօտ. խորասուզուած մտածութիւնների մէջ երկար որոճում էի ծերունու խօսքերը, որ կարծես ինձ համար աստուածային յայտնութիւն էին։

Մի անգամ այդպիսի մտածման մէջ ամբողջ գիշեր մնացի կանգնած։ Գլխավերևս փայլուն աստղազարդ երկինք, ոտներիս ներքև խաւարածածկ երկիր։ Արևածագին յանկարծ իմ մէջ նոյնպէս կաթեց լոյսի շող։ Ես ճանաչեցի մշտնջենական աստուածուհուն—այդ սէրն էր, որ նշմարեցի իմ ներսը և իմ դրսեր։ Սկսայ ջերմեռանդութեամբ աղօթել, յետոյ շտապեցի իմ տուն։ Քանդակելու դուրը դրի արձաններիս ոտների առաջ, ելայ տնից և գտայ ձեզ, թանկագին բարեկամներիս։ Մի՞թէ դուք աստուածութեան ամենագեղեցիկ պատկերները չէ՞ք, մի՞թէ ձեր սրտերում աւելի երկար չեմ ապրել, քան թէ պաղ դիւրութեամբ փըշրուող մարմարի մէջ։

Այսպէս խօսեց Սոկրատը և պայծառ ակնարկ ձգեց աշակերտների վրայ։ Շրջանն աւելի սեղմ բոլորեց նրան։ Իմաստուն և քնքշասիրտ Պլատոնը բռնեց ուսուցչի աջ ձեռը և լուռ նայեց նրա դէմքին, բարեսիրտ Ապոլլոդորը կալաւ նրա ձախ ձեռը և արտասուեց. իսկ Ալքիբիադէսը կանգնած աչքերը յառել էր գետնին, դէմքը կրակի պէս վառվռում էր։

Այդ ժամանակ արեգակը մայր էր մտնում. ամենը լուռ ու մունջ ցրուեցին տները։

Ք. Ս.

# Գ ի տ ո ւ թ ի ւ ն

## ՑԵՂԱՅԻՆ ԶԳԱՑՈՒՄԸ*)

### ԻԲՐԵՒ ՄԻ ԳՈՐԾՕՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Եթէ այստեղ ժամանակ լինէր հինից Նոր Աշխարհին անցնելու և քննելու սպանացի աշխարհակալների հասած պահից ժամանակը հոծ բնակչութեամբ լեցուած Արևմտեան կիսագնդի այդ մասերի ցեղային յարաբերութիւնների երևոյթները, մենք պիտի գտնէինք, որ այդ երևոյթները ձգտում են յանգել հին Աշխարհում փորձուածներին գրեթէ նմանօրինակ եզրակացութիւնների, որ Ամերիկայի բնածինները վանողութեան ընդհանուր զգացմունք չեն ներշնչել սպանացի արշաւողներին, ակներև է այն իրողութիւնից, որ միջամուսնութիւններն սկսել էր հենց առաջին օրերից։ Եւ այդ բացի Արգենտինայից և Ուրագուայից՝ այդ երկրներում շարունակուեց այնչափ մեծ ծաւալով, որ այսօր ազգաբնակութիւնը կամ բնածին հնդիկ է և կամ խառնածին։ Գուցէ Մեքսիկայում կան մի քանի հարիւր հազար զուտ սպանացիներ և գրեթէ նոյն չափով էլ Չիլիում և Կուբայում (կղզու մէջ իրարախառնումը եղել է սևամորթ նեգրների և ոչ թէ հնդիկների հետ), իսկ միւս հանրապետութիւնների մէջ կան փոքր թուով սպանացիներ։

«Մեսթիզո» (mestizo)-ների (խառնածին) և զտարուն եւրոպացիների միջև չկայ ոևէ ընկերական բաժանում և ոչ մի թշնամութիւն։ Խառն ցեղին պատկանողները գործնականապէս համարւում են իբրև սպիտակամորթներ։ Իսկ բնածին հնդիկները գտնւում են մի ստորագոյն մակարդակի վրայ. նրանք կրթուած չեն. ոմանք ցերեկներն աշխատում են սպիտակամորթների համար, ուրիշներ էլ անքաղաքակիրթ են և ապրում են տոհմական վիճակի մէջ։ Նրանք չեն առւում բարձր դասի կողմից և բացի իրենց արհամարհողների և որոշ տեղերում էլ կեղեքողների հանդէպ բնականաբար զգացած երկչոտ կասկածանքից և հեռակացութիւնից, նրանք բարձր դասի հանդէպ չեն սնուցանում ոևէ ատելութիւն, երկարատև անարգարութիւնները և կեղեքումներն էին, որ 1780-ին Տուպակ Ամարուի ղեկավարութեամբ առաջ բերին հնդիկների միակ մեծ ապստամբութիւնը Պերուի սպանացի փոխարքային դէմ։ Ցեղային զգացումը երբէք մի գործօն չի եղել

*) Տես «Համբաւաբեր» № 47։

տը առջևից դէպի արևմուտք, մինչև որ հասան Սան-Ֆրանսիսկօ։ Նրանք չունէին մարդաբանական և ազգագրական գիտութիւնները, ոչ էլ երկրաբանութեան, թէև նրանք էլ մեզ պէս կարող էին տեսնել երկրագնդի կեղևի տարբեր խաւերը և քննել այնտեղ թագնուած բրածոները. Նրանք ուշադրութիւն չէին դարձրել այդ խնդիրներին։ Յոյները գերազանց են բարբարոսներից, ինչպէս վերջին դարերում քրիստոնեաները իրենց գերադաս էին համարում մուսուլմաններից և կռապաշտներից։

Ուրեմն ընդունելով՝ որ այս ուրուագիծը ուղիղ է իր լայն գծերով—թէև ես չեմ յաւակնում պնդելու որ այդ այդպէս է և իր մանրամասների մէջ—մենք հասնում ենք հետևեալ եզրակացութեան.

Թէ սկզբնական դարերում գոյութիւն ունէին տոհմական ուժեղ բնազդներ և տոհմական հակամարտութիւններ, բայց ցեղային զանազան խմբերի միջև՝ արիւնակից արմատին պատկանող ժողովուրդների կամ տոհմերի միջև գոյութիւն ունեցած թշնամութիւններից աւելի այլ բան չկար։

Թէ քաղաքակրթութեան յառաջադիմութեան ընթացքում տոհմական բնազդներին և հակամարտութիւններին յաջորդեցին քաղաքական համայնքների և նրանց վեհապետների հակառակութեան վրայ հիմնուած նոր հակամարտութիւններ, ինչպէս նաև կրօնական թշնամութիւններ՝ քրիստոնէութեան և իսլամութեան ծագումից յետոյ։

Թէ ցեղերի կեանքում թէպէտև հոսում էր տոհմական բնազդի կամ ցեղային զգացմունքի մի ենթահոսանք, բայց այդ զգացումներն ստացան մի մեծ ույժ և մի նոր թափ կրօնական կրքերի և աշխարհակալական տենչանքների միջոցով։

Թէ Ազգութեան հարցի զգացումը, նախ գլխաւորապէս հիմնուած լեզուի, գրականութեան և պատմական աւանդութիւնների ընդհանրութեան վրայ, արդէն տեսանելի էր ԺԸ. դարի վախճանից առաջ, և որ արագօրէն աճեց և զարգացաւ ԺԹ. դարի ընթացքում, առ սակաւ սակաւ ստանալով մի ցեղային բնոյթ։

Ա. Սաֆրաստեան

(Վերջը հետևեալ համարում)

# ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

## «ՈՎԿԻԱՆՈՍԻՑ ԴՈՒՐՍ»

Նոյեմբերի 17-ին Արտիստիկ թատրոնում «Գուրգէն» դերասանական Ընկերութիւնը ներկայացրեց Ե. Գորդինի «Ովկիանոսից դուրս» թատերերգը (պիեսա)։

Այդ թատերերկում երևան է գալիս Ռուսաստանում ապրող հրէայ կալուածատիրոջ տիպը՝ յանձինս Իսահակ Ֆրիտենդալի, որ մի հնացած, խստաբարոյ և հրէական գիծերով ծերունի է, որի դերը տարաւ պ. Արէյեանը զուսպուած կերպով։

Թատերերգի կենտրոնական և գլխաւոր դերակատարներից հրէայի մեծ աղջիկ Էսֆիրն է, որ սկզբում սիրահարուած է եղել մի քրիստոնեայ երիտասարդի վրայ. ծերունի հայրը սոսկալի տանջւում է այդ բանից և աղջկայ համար մի ջութակահար փեսացու է ճարում և յաջողացնում Էսֆիրին ամուսնացնել այդ գեղարուեստագէտի (արտիստի) հետ։ Լքուած աղջիկը լռութեամբ հնազանդւում է հօր կամքին. հնազանդութեան այդ տեսարանում տիկ. Մայսուրեան (Էսֆիր) յաջող էր և բնական։ Էսֆիրի ամուսնութիւնից յետոյ՝ տեսարանը փոխւում է ովկիանոսից դէն գտնուող միւս աշխարհում (Ամերիկա), ուր ապրում է Էսֆիրը իր ամուսնու հետ։ Այդտեղ Էսֆիրը ծնում է առաջին սիրահարից մի երեխայ, որ այժմ մեծացել է և դասեր է առնում։

Ամերիկա են մեկնում նաև Ֆրիտենդալն և իր կրտսեր աղջիկն Ցիւան և մանչ Սամուէլը։ Ցիւան և Միքայէլը սիրահարւում են իրար հետ և այդտեղ արդէն սկսւում է բուն ողբերգութիւնը։ Յայտնւում է, որ Էսֆիրի զաւակը Հաննին՝ Միքայէլի հարազատ որդին չէ. բացւում է նաև Ցիւայի և Ֆրիտենդալի փեսայի յարաբերութիւնները։ Կեանքի այդ ճգնաժամային րոպէներին աւելի փայլեց տիկ. Մայսուրեանի յաջողութիւնը. նրա մէջ պոռթկաց վիրաւորուած սրտի ամբողջական վիշտը և հոգեկան այդ ծանր տառապանքը, որ գաղտնօրէն լափում ու տանջում էր նրան. այդ պոռթկումը արտայայտուեց շատ զօրաւոր և տպաւորութիւն գործեց հասարակութեան վրայ։

Էսֆիրի հոգեկան տանջանքներին հակադրուած էր Ցիւայի (օր. Ժամէն) կրքոտ և դաւաճան արտայայտութիւնը։ Օր. Ժամէնի խաղը աւելի յաջողութիւն ունեցաւ և աւելի ցայտուն կերպով երևան եկան կնոջ բնաւորութեան բացասական կողմերը։

Գ. Մ. Ալիխանեան միջակ կերպով տարաւ Էսֆիրի ամուսնու դերը։ Այդ տիպը, պատասխանատուներից մէկն է և պահանջում է աւելի վարժ և կեանքի յաջորդող ողբերգական դէպքերի հոգեբանութիւնն ըմբռնող դերակատար։ Փեսայի հօր՝ Եանկէյի տիպը Վրոյրին շատ յարմարուեց ներկայացնել, նմանապէս նրա կնոջ՝ Ֆրումա Մուխի դերը աշխոյժ կերպով տարաւ տիկ. Ազնիւը։ Այդ երկուսը մի քիչ աշխուժութիւն և ոգևորութիւն էին մտցնում ողբերգութեան մէջ։

Ուշադրութեան արժանի էին նաև տիկ. Մանուչարեան, պ. Ժիրայր, տիկ. Յովհաննիսեան, առաջինը՝ Էսֆիրի մօր, երկրորդը՝ Էսֆիրի եղբօր և երրորդը՝ Անաստասիայի դերում։

Ներկայացումը բաւական ցնցող տպաւորութիւն գործեց ներկաների վրայ։

—

Հայոց Դրամատիկ Ընկերութեան խմբի իններորդ հերթական ներկայացումը կը կայանայ վաղը՝ երկուշաբթի, նոյեմբերի 28-ին, Արտիստական թատրոնում։ Խաղալու են «Իսրայէլ» եղերերգ Ա. Բեռնշտէյնի։ Ազնէս դը Կրուսիի դերը կանձնաւորէ տիկ. Սիրանոյշը, ժիւստին Գիւ Տլիբի՝ Յ. Սևումեան. Թիբօ Դը Կլարի՝ Վ. Փափազեան։ Մասնակցում է խումբը լրիւ։

# ԱՅԼԵՒԱՅԼՔ

## ՈՒԺԵՂԱԳՈՅՆԸ

Անգլիոյ կառավարութիւնը և Ամերիկայի լրագրական թագաւոր Գերստի միջև ծագել է մի հետաքրքրական պայքար, որի ելքը անչափ շահագրգռում է Ամերիկայի հասարակութիւնը։ Անգլիացիք Գերստի մամուլին բոյկոտ են անում չափից դուրս գերմանասիրական ուղղութեան պատճառով։ Լոնդոնում գտնուած Գերստի տեղեկատու «Ծառայութիւն միջազգային նորութեանց» բիւրօն շատ քիչ տեղեկութիւններ է ստանում անգլիացոց իշխանութիւններից։ Բայց Գերստն այնպիսի մարդ չէ, որ առանց կռուի անձնատուր լինի. և որովհետև ծախսերի չափը նորա համար ոչ մի նշանակութիւն չունէր, ուստի և նա վճռեց մտնել անգլիական իշխանութեանց և այս կարգադրութեանց դէմ իւրատեսակ մենամարտի։ Գերստին, պէտք է նկատել, պատկանում են ամերիկեան 11 խոշոր լրագիր, որոնք օրական հրատարակւում են 11 միլիոնից աւելի օրինակ։ Սակայն այսու բնաւ չի սպառւում Գերստի ազդեցութիւնը լրագրական աշխարհում։ Նա բացի այդ իրագործում է ամենազօրաւոր վերահսկողութիւն 1200 այլ ամերիկեան լրագրերի տեղեկատու նիւթերի վրայ, այսինքն իրապէս այդ լրագրերը իր բռում ունի։ Անգլիացոց գրաքննութիւնից Գերստի հեռագրերը խուսափում են՝ ստանալով գերմանացոց Նաուէնի անթել հեռագրական կայարանից։ Բացի այդ Գերստը ծր-

*բագրում է կազմակերպելու յատուկ սնդաշոգենաւ (Курьерскіе пароходы) Եւրոպայից հասցնելու ընդարձակ հաղորդագրութիւններ և թղթակցութիւններ, առանց գրաքննութեան։ Բանն այն է, որ վերջին տարին Գերմանիայից Նիւ-Եօրկի լրագրերի խմբագրութիւնները Գերմանիայից ոչ մի լրագիր չեն ստացել,—այսպէս լաւ գործում է անգլիական սղաթը (բլոկադը)։*

*Ամերիկացիք համոզուած են, որ պայքարը կը վերջանայ Անգլիացոց կառավարութեան յաղթութեամբ։*

### ԿԱՐԵԼԻ՞ Է ՀՈՂՈՎ ՍՆՈՒԵԼ

*Այս հարցին մի ֆրանսացի բժիշկ պատասխանում է վճռականօրէն, հետևեալ տուեալներից առաջնորդուելով.*

*Նա հաղորդում է, որ Պարսկաստանում հողակերութիւնը շատ ընդհանրացած է։ Այնտեղի շուկաներում ծախւում է երկու տեսակ ուտելի հող, սպիտակ, փոքրիկ, խղոտ, իբրև կաւ և սպիտակ պինդ գունդեր, սակաւ ինչ աղհամ։*

*Այս հողեղէն ուտեստների գործածութիւնը ոչ միայն վնասակար չէ, այլ օգտակար, և պարսիկները սիրով գործ են ածում։*

*Կուինէայի եզերքներում նեգրերը ուտում են տեղնորակ հող, որը և համարւում է խորտիկ։*

*Աֆրիկայի զանազան վայրերում հողակերութիւնը բաւական շատ տարածուած է և մի քանի ցեղեր անյողդողդ տրամադրութիւն են արտայայտում հողը կլանելու։*

*Այս բարեպատեհ գիւտով հայ ուսուցիչների և գրագէտների ապահովութեան խնդիրն այլևս սպառուած է։*

---

# Մամուլ

---

## «ԱՐԱՐԱՏ» ԱՄՍԱԳԻՐ

*Սեպտ.-Հոկտ. միացեալ համար.*

*Վերջին երկու-երեք տարուայ ընթացքում Էջմիածնի «Արարատ» ամսագրի խմբագրման գործը բաւականին վատ էր առաջ գնում։*

*Վերջերս խմբագրելու գործն անցաւ Գիւտ արեղայի ձեռքը (նախկին Պեսիմիստը), որը մինչև այժմ խմբագրել է երկու համար։ Սրա խմբագրած առաջին համարը ոչնչով չի տարբերուած նախկին խմբագրութեան հրատարակած համարներից, սակայն վերջինը միանգամայն տարբերւում է նախկիններից թէ իր նիւթերի ճոխութեամբ և թէ լրջութեամբ։*

*Ընթերցողն այս համարի մէջ կարդալու բաւականին բան կարող է գտնել. ուշագրաւ են բանասիրական, գրական, պատմական, գրախօսական—քննադատական բաժինների համարեա բոլոր յօդուածները։ Առանձին հետաքրքրութեամբ են կարդացւում խմբագրի քննադատական յօդուածները, որոնց մէջ փաստական յիշատակումներն եթէ աւելի չեշտուած լինէին, արժէքը զգալի չափերով աւելի կը մեծանար։*

*Մի երկու դիտողութիւն սակայն կարևոր եմ համարում կցելու։ «Արարատ»-ի պատմական հիւանդութիւնն է եղել շարունակելի յօդուածների շատութիւնը. այսու սակայն թուլանում է ընթերցողի աչքում ամսագրի արժէքը, որ ուզում է ամբողջական յօդուածներ միանգամից կարդալ և վերջացնել։ «Արարատ»-ի այս համարի մէջ ևս կարևոր 9 յօդուածներից հինգը շարունակելի է։*

*Մի դիտողութիւն ևս «Մայր-Աթոռ» կազմողին։ Յարգելի յօդուածագիրը Էջմիածնի շուրջը պատահած ամենասովորական դէպքերը, ընթացիկ լուրերն այնպիսի բանաստեղծական, սրտադէպ ոճով է նկարագրում, ա ծ ա կ ա ն ն ե ր ի մի այնպիսի քանակ է հանդէս բերում, որ նկարագիրը դառնում է գաւեշտական բանիմաց ընթերցողի համար։ Զուտ տարեկայական նկարագիրը քրոնիկոնի յատկանիշը պէտք է կազմէ։*

*«Արարատի» խմբագրի նախկին համարի «Անծանօթութեան հետևանք» և այժմեան համարի «Սրտացաւ աջակցութեան կարիք» յօդուածների մէջ մի անյաջող և ցաւալի փորձ է կատարւում քննադատական մտքի անհրաժեշտութիւնը անուղակի կերպով թուլացնելու համար։*

*Այսպէս թէ այնպէս «Արարատ»-ի խմբագրման գործը լաւ հիմքերի վրայ է դրած։ Խմբագրութիւնը որքան հեռու լինի հրապարակախօսութիւնից և միայ գիտութեան ասպարէզի վրայ, այնքան աւելի լաւ կը լինի գործի համար։*

*Գ. Էգ.*

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ

### Կ. Հ. Բ. Ը.-ԹԵԱՆ ՂԱՓԱՆԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### Դիմում

*Ղափանը, ինչպէս շատ շատերը մեր գաւառներից, իր բազմաթիւ գիւղերով ու հազարաւոր բնակչութեամբ կտրուած, կղզիացած է դրսի աշխարհից, լուսաւոր կենտրոններից։ Մոռացուած բոլորից, կծկուած իր ցաւերով լի և մթաւոր խաւարով շուրջպատ իրականութեան մէջ, անվերջ տնքում ու հիւծւում է իր անտակ ցաւերի ու անհատնում հոգսերի ծանր բեռի տակ։ Շուրջը՝ կարիք, որոնց դիմաց դրսի աշխարհը շատ հեռու է ու խուլ, իսկ ներսը՝ օգնող, ցաւերին դարման անող կարող ուժեր գաւառս համարեա թէ չունի։*

*Կ. Հ. Բ. Ընկ. Ղափանի ճիւղը, որ ծնունդ է առել շրջանիս այդ վէրքերի և կարիքների դարմանման գործում իր հաւաքական աշխատանքը դնելու, իր մի շարք պէտքերի հետ այսօր ունի նաև սեփական շինութեան անհրաժեշտ կարիքը, որի հետ կապած են մեծ յոյսեր. այդտեղ պիտի կազմակերպուեն պարբերաբար դասախօսութիւններ, հանդէս-ներկայացումներ, տեղաւորուի և ընդարձակուի ճիւղիս գրադարան-ընթերցարանը, միով բանիւ պիտի ընդարձակի և թափ ու եռանդ տայ ճիւղիս գործունէութեանը։*

*Լիայոյս, որ ինչպէս մեր բազմաթիւ օտարարնակ ունևոր հայրենակիցները, նոյնպէս և հասարակական-բարեգործ. ընձեռութիւններն ու բարերար անհատները չեն զլանայ օգնութիւնը շրջանիս բարօրութեան համար. ճիւղիս վարչութիւնը այդ նպատակի համար հիմնել է մի յատուկ «Շինարարական հիմնադրամ» (ֆոնդ), որով պէտք է կառուցուի և նախագծուած շինութիւնը։*

*Մինչև այժմ ֆոնդին միանուագ խոստացել են պ. պ. 1. Ս. Մելիք Ստեփանեան իր քոյր տ. Վարսենիկի յիշատակին 300 ռ., 2. Անդ. Բաբայեան՝ իր կնոջ տ. Սառայի յիշատակին 500 ռ., 3. Կ. Ս. Խոջամիրեան 300 ռ., 4. Ս. Ի. Խոջամիրեան՝ իր եղբայր Խաչ. Խոջամիրեանի յիշատակին 100 ռ., գումարը՝ 1200 ռ.։*

*Վարչութիւնս իր շնորհակալութիւնը յայտնելով յարգելի նուիրատուներին, այսու յայտնում է, որ ստացուելիք նուիրատուութեանց մասին պարբերաբար հրապարակական հաշիւ կը տրուի։*

*Նախագահ Վարչութեան՝ Ս. Մելիք Ստեփանեան*
*Քարտուղար՝ Յակ. Տէրունի*

## ՎՐԻՊԱԿ

*«Համբաւաբերի № 47-ում 1479 էջում տպուած «Ճանապարհորդական տպաւորութիւններ» յօդուածի 24-րդ տողում 5000 ռուբլին պէտք է լինի 50,000։*

*Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*

*Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*

## Յայտարարութիւններ

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 48

# „ՀԱՄԱՅԱՐԱՅԵՐ“-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Ալաշկերտի որբանոցի որբերի անուանացուցակը*

*1916 Թ. Նոյեմբերի 1-ին*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Տարիքը | Ծննդա-վայրը | Շրջան | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|
| 1 | Աբրոյեան Ագատ | 6 | Խասգիւղ | Մուշ | |
| 2 | » Պայծառ | 10 | Գարաքեօփրիկ | Խնուս | |
| 3 | » Սարգիս | 4 | » | » | |
| 4 | Ագատեան Խաթուն | 6 | Խարչաւուշ | » | |
| 5 | Ագիգեան Գուլէ | 10 | Սայլուկ | » | |
| 6 | Ամարեան Սալվի | 15 | Բերդ | » | |
| 7 | Առաքելեան Խանըմ | 10 | Բաղքիկ | » | |
| 8 | Առոյեան Աննա | 10 | Պասրան | Վարդօ | |
| 9 | Արտէնեան Լեւոն | 13 | Արտերդ | Մուշ | |
| 10 | Արշակեան Բերսօ | 7 | Գարաքեօփրիկ | Խնուս | |
| 11 | Արսէնեան Սիրան | 11 | Բերդ | " | |
| 12 | » Սամսոն | 9 | » | " | |
| 13 | » Զօհրապ | 7 | » | " | |
| 14 | » Բուրան | 5 | » | " | |
| 15 | Աւետիսեան Ասիկ | 8 | Զաւուրմէ | " | |
| 16 | » Սօսէ | 10 | Բօստաքեանդ | Մուշ | |
| 17 | » Մարգարիտ | 10 | Բաղքիկ | Խնուս | |
| 18 | » Նանախաս | 9 | » | " | |
| 19 | » Մխիթար | 12 | Ջիրէրլու | Ալաճաւազ | |
| 20 | Բաղդասարեան Եաշար | 8 | Մծնկերտ | Խնուս | |
| 21 | » Արեգ | 3 | » | » | |
| 22 | Բատէեան Ատէ | 10 | Խալչաւուշ | » | |
| 23 | » Ասմար | 7 | » | » | |
| 24 | Գասպարեան Եզսօ | 8 | Բօստաքեանդ | Մուշ | |
| 25 | Գեղամեան Լիլիտ | 7 | Ղարաչօպան | Խնուս | |
| 26 | Գրիգորեան Նուարդ | 10 | Գարաքեօփրիկ | " | |
| 27 | » Անգին | 13 | Տօտան | Վարդօ | |
| 28 | » Աւատուր | 8 | — | Մուշ | |
| 29 | Գրիգորեան Ռուբէն | 7 | Կինդէմիր | Վարդօ | |
| 30 | » Մկրտիչ | 13 | Գրխու | Մոտկան | |
| 31 | » Ղազար | 7 | » | » | |
| 32 | » Սերովբ | 4 | » | » | |
| 33 | Երանոսեան Մարգար | 10 | Զաւուրմէ | Խնուս | |
| 34 | » Քիշմիշ | 18 | » | " | |
| 35 | Էլոյեան Անդրանիկ | 11 | Բօստաքեանդ | Մուշ | |
| 36 | Իբրոյեան Ազնիւ | 10 | Սօրտար | » | |
| 37 | Խնկոյեան Անտօ | 6 | Արլրուհար | » | |
| 38 | » Սանամ | 8 | | » | |
| 39 | Խոտէտանեան Մուշեղ | 12 | Առնճիկ | Բլանուխ | |
| 40 | Կարոյեան Ալմաստ | 7 | Խասգիւղ | Մուշ | |
| 41 | Համբարձումեան Վարդէ | 11 | Բերդ | Խնուս | |
| 42 | » Անդրանիկ | 7 | » | » | |
| 43 | » Անուշ | 4 | » | » | |
| 44 | » Ազրութ | 10 | Սօրտար | Մուշ | |
| 45 | » Մարգարիտ | 15 | Խաշխալտաղ | » | |
| 46 | Համոյեան Ազնիւ | 4 | Խնուս | » | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 47 | Հլղաթեան Սիսակ | 12 | Աներ | Մուշ |
| 48 | Ղազարեան Համայեակ | 6 | Կիւնտէմիր | Վարդօ |
| 49 | » Անդրանիկ | 11 | Կամախ | Բիթլիս |
| 50 | Խուրշուդեան Արմէն | 8 | Բոստաքեանդ | Մուշ |
| 51 | Մանուկեան Հրեղէն | 10 | Հարամիկ | Խնուս |
| 52 | » Բեզօ | 18 | Համզաշեխ | Բլանուխ |
| 53 | » Մուշեղ | 10 | Ղարադլու | " |
| 54 | Մարգարեան Յակոբ | 12 | Կիւնտէմիր | Վարդօ |
| 55 | » Մարէ | 8 | » » | » |
| 56 | Մարտիրոսեան Յովհաննէս | 12 | Երիշտեր | Մուշ |
| 57 | Մելքիսեդեան Սաստաֆ | 8 | Կողակ | Բլանուխ |
| 58 | Մելոյեան Գէորգ | 11 | Խասգիւղ | Մուշ |
| 59 | Մինասեան Քիշմիշ | 6 | Արտօնք | » |
| 60 | Միսաքեան Աւստուր | 8 | Բերդ | Խնուս |
| 61 | Միրզոյեան Մեսրոպ | 13 | Կամախ | Բիթլիս |
| 62 | Մխիթարեան Տիգրան | 11 | Բոստաքեանդ | Մուշ |
| 63 | Միրաքեան Մարթա | 6 | Կէլիէկուզան | Սասուն |
| 64 | Մկրոյեան Հրեղէն | 7 | Գոմ | Մուշ |
| 65 | Մուշեղեան Զլֆի | 8 | Բոստաքեանդ | » |
| 66 | » Վարդէ | 6 | » | » |
| 67 | » Աղաւնի | 14 | Զաւուրմէ | Խնուս |
| 68 | Մուրադեան Խաչօ | 13 | Սզօնտ | Մոտկան |
| 69 | » Ննուշ | 12 | Կիւնտէմիր | Վարդօ |
| 70 | Յակոբեան Սաթէ | 8 | Յրօս | Խնուս |
| 71 | Յարութիւնեան Մկրտիչ | 12 | Խներ | Մուշ |
| 72 | » Խաչիկ | 10 | » | » |
| 73 | Յովհաննիսեան Աղաւնի | 15 | Բերդ | Խնուս |
| 74 | » Անդրանիկ | 8 | » | » |
| 75 | » Հրանդ | 6 | » | » |
| 76 | » Ասօ | 8 | Խաչխալղախ | Մուշ |
| 77 | Նազարեան Սարա | 10 | Օղնուտ | Բլանուխ |
| 78 | » Մխիթար | 13 | Պարզրան | Վարդօ |
| 79 | Ներսէսեան Միհրան | 12 | Կիւնտէմիր | » |
| 80 | Շիւքրիեան Նուարդ | 11 | » | » |
| 81 | Պօղոսեան Մարգարիտ | 4 | Քօլոսիկ | Մուշ |
| 82 | Պարտիզպանեան Հայկ | 12 | Թէմրան | Քղի |
| 83 | Պետրոսեան Հայկանուշ | 10 | Խումխայեա | Խնուս |
| 84 | Ռուբէնեան Խանում | 11 | Գարաքեօփրիկ | » |
| 85 | » Մուշտաղ | 9 | » | » |
| 86 | Սահակեան Սիրան | 10 | Բերդ | » |
| 87 | Սարգիսեան Աշխէն | 6 | Արլրուհար | Մուշ |
| 88 | » Վերգին | 12 | Արվարէջ | Մուշ |
| 89 | Սաֆարեան Խոսրով | 12 | Տուման | Խնուս |
| 90 | Սեդրաքեան Վարդէ | 10 | Գարաքեօփրիկ | » |
| 91 | » Փոլիս | 6 | » | » |
| 92 | » Մարէ | 10 | Տուման | » |
| 93 | » Աղաւնի | 6 | » | » |
| 94 | Սերովբեան Շուշան | 15 | Խներ | Մուշ |
| 95 | » Թաթօ | 11 | » | » |
| 96 | Սիմոնեան Հերքօ | 9 | Բոստաքեանդ | » |
| 97 | Իբրանուշ | 2 | Թիլ | » |
| 98 | Սիրան (հայր) | 5 | Խնուս | Խնուս |
| 99 | Սողոմոնեան Մարիամ | 6 | Թիլ | Մուշ |
| 100 | » Ազնիւ | 4 | » | » |
| 101 | Տիգրանեան Թաթօ | 10 | Գարաքեօփրիկ | Խնուս |
| 102 | » Սօնէ | 3 | Մուշ | Մուշ |
| 103 | » Արշիկ | 6 | » | » |
| 104 | Մկրտչեան Միսակ | 10 | Խաչլու | Ալաշկերտ |
| 105 | Աւետիսեան Մուշտաղ | 11 | Գոմանուկ | Խնուս |
| 106 | Մովսէսեան Յովսէփ | 12 | Բոստաքեանդ | Մուշ |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 107 | Աւետիսեան Միսաք | 13 | Շմլակ | » |
| 108 | Տիգրանեան Ազնիւ | 8 | Արօս | Խնուս |
| 109 | Յօվոյեան Իւղիկ | 8 | Ենկիբոյ | » |
| 110 | Աւետիսեան Խալատ | 6 | Արօս | » |
| 111 | Բառոյեան Գարէ | 8 | Բերդ | » |
| 112 | Տէր-Կարապետեան Բէնօ | 4 | Բրդադոմ | Մուշ |
| 113 | Աւետիսեան Սերոբ | 7 | » | » |
| 114 | Սարէեան Մուշեղ | 10 | Կիւնտէմիր | Վարդօ |
| 115 | Թումասեան Ջիֆէ | 5 | Գրխու | Մոտկան |
| 116 | Սաաքելեան Սանամ | 8 | Տուման | Խնուս |
| 117 | Յակոբեան Նազէ | 5 | Բրդադոմ | Մուշ |
| 118 | Սարգսեան Մարգար | 11 | Մկրագոմ | — „ |
| 119 | » Սօսէ | 9 | » | „ |
| 120 | Մարգարեան Յակոբ | 12 | Խուներ | „ |
| 121 | Ղազարեան Նորգիւլ | 4 | » | „ |
| 122 | Մանուկեան Սամսոն | 3 | Գովանդուկ | Խնուս |
| 123 | Կիրակոսեան Յակոբ | 5 | Արլըուհար | Մուշ |
| 124 | Շառոյեան Թուխէ | 7 | Ենկիբոյ | Խնուս |
| 125 | Սերոբեան Մկրտիչ | 6 | Գնձու | Մոտկան |

*Անուանացուցակ Ախալցխայի որբանոցի որբերի.*

*1916 թ. օգոստոսի 17-ին*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Գրիգոր | Դունիկ | 11 | ոչ | |
| 2 | Աւետիսեան Արեգնազ | Ծղակ | 9 | անյ. | Անյայտ է |
| 3 | Աւետիսեան Համայեակ | Թիֆլիս | 10 | այր | Թիֆլիս |
| 3 | Աշոյեան Ազնիւ | Խոզետ | 6 | ոչ | |
| 5 | Աղիղեան Վաղարշակ | Կիւմնեց | 6 | „ | |
| 5 | » Աղիզ | » | 12 | „ | |
| 7 | Ախտոյեան Գրիգոր | Շատախ | 8 | „ | |
| 8 | Ավեան Յարութիւն | Կուղոեան | 13 | մայր | |
| 9 | Արգարեան Լուսիկ | Վան | 5 | մայր | Թիֆլիս |
| 10 | » Վարդանուշ | » | 3 | այր | » |
| 11 | Գասպարեան Ղալած | Գանդեմիր | 9 | ոչ | |
| 12 | Գրիգորեան Խարէն | Էլլիս | 8 | „ | |
| 13 | Գաբրիէլեան Գրիշա | Նուխի | 10 | մայր | Թիֆլիս |
| 14 | Գրիգորեան Մարտիրոս | Ալաշկերտ | 12 | ոչ | |
| 15 | Գասպարեան Անդրանիկ | Խալչառուշ | 11 | մայր | Կարս |
| 16 | Գրիգորեան Արևալուս | Նունով | 6 | ոչ | |
| 17 | Գրիգորեան Մերինազ | Ակրակ | 11 | „ | |
| 18 | Գրիգորեան Որուանդ | Մուշ | 10 | „ | |
| 19 | Թոմասեան Սիրանուշ | Շատախ | 9 | „ | |
| 20 | Թուխիկեան Սրմենակ | Փայխներ | 15 | մայր | Երևան |
| 21 | » Արուշակ | „ | 9 | այր | » |
| 22 | Խաչիկեան Արամ | Վարդով | 7 | ոչ | |
| 23 | Խաչատրեան Աւետիս | Ախալցխա | 9 | » | |
| 24 | » Ռաֆֆիկ | » | 6 | » | |
| 25 | Խաչիկեան Խաչիկ | Քօշ | 10 | » | |
| 26 | Խաչիկեան Վահան | Նոր գիւղ | 6 | մայր | |
| 27 | Կարապետեան Հռոմ | Շուշետ | 6 | այր | Արդահան |
| 28 | Կարէեան Շուշիկ | Փունտէմիր | 7 | ոչ | |
| 29 | Համբարձումեան Պետրոս | Փունտէմիր | 12 | մայր | |
| 30 | « Երանոս | » | 5 | այր | |
| 31 | Հերէեան Սաթենիկ | Գունդէմիր | 10 | մայր | Ախալցխա |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 32 | Հայրիկեան Հայրիկ | Կաճեւո | 16 | մայր | |
| 33 | Համբարձումեան Դաւիթ | Արդահան | 10 | մայր | |
| 34 | Ղազարեան Մաքի | Խնուս | 6 | մայր | Քրդ. տարել |
| 35 | Մարգարեան Եզնիկ | Ցրօնք | 8 | մայր | |
| 36 | Մանուկեան Նիկոլ | Խնուս | 6 | մայր | |
| 37 | Մանուկեան Մուշեղ | Խնուս | 7 | այր | Տաճկ. գին. |
| 38 | Մանուկեան Պետրոս | Մանդան | 10 | ոչ | |
| 39 | Մանուկեան Վաղարշակ | Սուէն | 10 | մայր | |
| 40 | Մուխսի-Սնոյեան Բարկեն | Խալչաուշ | 11 | ոչ | |
| 41 | Մուրադեան Խորէն | Գամ-գամ | 8 | » | |
| 42 | Մարտոյեան Խոսրով | Գունտէմիր | 12 | » | |
| 43 | Մելքոնեան Անդրանիկ | Խալչաուշ | 6 | » | |
| 44 | » Վանօ | » | 4 | » | |
| 45 | Մուշոյեան Դերենիկ | Ցխաւան | 6 | » | |
| 46 | Մկրտչեան Մանուկ | Ցիրան | 8 | » | |
| 47 | Մխիթարեան Ենոք | Ջանիկ | 12 | » | |
| 48 | Մխիթարեան Անդրանիկ | Շեխ-Ազուր | 10 | հայր | Թիֆլիս |
| 49 | Մելոյեան Սօսէ | Զաուրմա | 3 | ոչ | |
| 50 | Մարտիրոսեան Նազար | Նաւշէտ | 7 | մայր | Արդահան |
| 51 | Կարոյեան Մուշեղ | Երիզակ | 12 | ոչ | |
| 52 | Յակոբեան Սաթենիկ | Սոր-դար | 15 | » | |
| 53 | Յարութիւնեան Ջուրար | Հրնով | 7 | մայր | |
| 54 | Յովէեան Առաքել | Օրգնոց | 8 | հայր | Կամաւոր |
| 55 | Յովհաննիսեան Վարդգէս | Հիլի | 11 | » | Բագու |
| 56 | Յովհաննիսեան Եղիսաբեթ | Մարմետ | 10 | ոչ | |
| 57 | Դարբինեան Մանուկ | Ղըզըլաղաջ | 13 | » | |
| 58 | Նախոյեան Վարդան | Թայու | 11 | մայր | Գանձակ |
| 59 | Ներսիսեան Արուսեակ | Հրամիկ | 7 | ոչ | |
| 60 | Ներսիսեան Սւետխ | Գանցակ (գիւղ) | 9 | մայր | Էջմիածին |
| 61 | Շառոյեան Քրիստ | Քարձոր | 10 | ոչ | |
| 62 | Պօղոսեան Գրիգոր | Ըմբրան | 8 | մայր | Էջմիածին |
| 63 | Պալասանեան Մանուկ | Նոր գիւղ | 15 | | |
| 64 | Պօղոսեան Ռուբէն | Օղնուտ | 8 | | |
| 65 | Պօղոսեան Յարութիւն | Ըմբրան | 6 | ոչ | |
| 66 | Պետրոսեան Անդրանիկ | Յաւկոն | 12 | ոչ | |
| 67 | Ջուրջեան Եղիազար | Ջանիկ | 13 | մայր | Էջմիածին |
| 68 | Ստեփանեան Էրանոս | Գունտէմիր | 11 | ոչ | |
| 69 | » Անդրանիկ | » | 8 | » | |
| 70 | Սուքիասեան Ազատ | | | | |
| 71 | Սարգսեան Գիւլէ | Ծղակ | 4 | հայր | |
| 72 | » Նազէ | » | 10 | » | |
| 73 | » Ազրութ | » | 9 | » | |
| 74 | Սրգէեան Հայկ | Խալչաուշ | 10 | » | |
| 75 | » Լուսիկ | » | 2 | » | |
| 76 | Սրգէեան Հռոմ | Գիւնտէմիր | 5 | » | |
| 77 | Սալոյեան Եղիշէ | Քաջառենց | 8 | » | |
| 78 | Սիմէոնեան Ռուբէն | Գամ-գամ | 7 | » | |
| 79 | Սամբուլեան Միքայէլ | Վան | 9 | » | |
| 80 | Սահակեան Անուշաւան | Արճէշ | 10 | » | |
| 81 | Սօսոյեան Թոմաս | Թայու | 10 | հայր | Գանձակ |
| 82 | Սերոսեան Գէորգ | Ադագրիւր | 11 | » | Թիֆլիս |
| 83 | Սաֆարեան Մկրտիչ (Մկրօ) | Թոնաշէն | 10 | ոչ | |
| 84 | Վարդանեան Թոմաս | Նարեկ | 11 | » | |
| 85 | Վարդէեան Դեղամ | Խալչաուշ | 13 | » | |
| 86 | Վարդանեան Հայկազ | Խալչաուշ | 6 | » | |
| 87 | Տէր-Վարդանեան Սամսոն | Պելու | 11 | » | |
| 88 | Վարդանեան Արտաշ | Խալչաուշ | 4 | » | |
| 89 | Տէր-Սարգսեան Գարեգին | Խաս-գիւղ | 12 | մայր | Խնուս |
| 90 | » Արամ | » | 10 | » | » |
| 91 | Քերովբեան Յարութիկ | Ախալցխա | 8 | ոչ | |
| 92 | Կարոյեան Սամսոն | Դերիկ | 11 | ոչ | |
| 93 | Մովսիսեան Աբգար | Խալչաուշ | 10 | | |
| 94 | Մակարեան Արամ | Գունտէմիր | 8 | | |
| 95 | Մանուկեան Նուշրեվան | Խնուս | 6 | | |
| 96 | Գրիգորեան Էրինազ | Ակրով | 10 | | |